


ՍԱՐԳԻՍ ՀՈՎՏԱՆՅԱՆ

Ցուրտ է. ցո՜ւրտ...

Ձյունը թանձր-թանձր նստել է երկրի վրա, քաղաքի վրա, Հրաչիկենց փողոցում:

Հրաչիկը խաղում է ձյունածածկ մայթի վրա։

Բոլոր մյուս երեխաները չմուշկներով ու սահնակներով են խաղում, իսկ Հրաչիկը փափուկ ձյունը տափակացրել, հարթել և փայտիկով խազմըզում է. ինչ-որ բան է նկարում։

Մարդիկ են անցնում։ Նրանք նայում են Հրաչիկի խազմզածներին։ Իհարկե, ոչ ոք չի նկատում, թե Հրաչիկը ինչ է անում, նկարո՞ւմ է, թե՞ խաղում:

Հրաչիկը ոչ ոքի վրա ուշադրություն չի դարձնում։ Նա կարծես ուզում է շատ կարևոր մի բան նկարել։ Բայց, ըստ երևույթին, չի կարողանում գլուխ բերել: Նա ջնջում է ձյունը, նորից հարթեցնում, ապա նորից է սկսում նկարել փայտիկով, որը ձյուննակալել, սառել ու կոշտացել է:

Հրաչիկը չի հուսահատվում։ Նա համոզված է, որ անպայման կկարողանա իր ցանկացածը նկարել, թեկուզ դեռ նրան չի հաջողվում:

Վերջապես, նա ավարտեց իր աշխատանքը ու մի կողմի վրա կանգնեց: Սկսեց դիտել նկարածը։

Մի մարդ էր անցնում ու չէր նկատում Հրաչիկի նկարը։

Հրաչիկը այնպես կանգնեց նկարի առաջ, որ անցորդը ոտքերով չտրորի այն։ Մարդը նկատեց, ճանապարհը փոխեց։

Հրաչիկը գոհ էր, որ մարդը փոխեց իր ճանապարհը։

— Ի՞նչ ես նկարել, տղա՛ս,— հանկարծ կանգ առավ ու հարցրեց մարդը՝ ժպտալով և ուշադիր նայելով նկարին։

Հրաչիկը սկզբում ամաչեց։ Կանգնել էր նկարի առաջ և աշխատում էր ծածկել, որ անցորդը չըտեսնի...

— Արև՞ ես նկարել։

— Այո՛։

— Իսկ ինչո՞ւ ձնե մարդ չես սարքում,— հարցրեց մարդը:

— Ես ձնե մարդ չեմ սիրում,— պատասխանեց Հրաչիկը:

Նա ուզում էր ասել, որ ձնե մարդը սաստիկ սառն է։ Հետո աչքերի ու բերանի փոխարեն գլխի վրա անցքեր են բաց անում։ Եվ ձեռքին էլ անպայման մի ցախավել են տալիս։ Իսկ... արդյո՞ք ձնե մարդը կուզենար ցախավել բռնել։ Հետո... ձնե մարդը միշտ էլ ոտքեր չի ունենում. հողի մեջ խրված, կես թաղված մարդ է:

— Է՛լ ի՞նչ ես նկարելու։

— Ծիտիկներ։

— Որտե՞ղ ես նկարելու ծիտիկները,— հարցրեց մարդը:

— Արևի տակ։

— Ինչո՞ւ:

— Որ չմրսեն...

— Դե նկարիր, տղա՛ս, ծիտիկներ նկարիր, որ արևի տակ տաքանան։ Շատ ծիտիկներ նկարիր,— ասաց մարդը և ուզում էր գնալ, երբ Հրաչիկը նրան հարցրեց.

— Իսկ այս արևի տակ շատ ծիտիկներ կարո՞ղ են տաքանալ։

— Կարող են,— ասաց մարդը և գնաց։

Իսկ Հրաչիկը կանգնած մտածում էր։ Մտածեց,



ՓԵՏՐՎԱՐ
№ 2 1962 Թ.

# ՊԻՈՆԵՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
33-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



մտածեց... փայտիկով սկսեց նորից նկարել: Նա նկարեց մի մարդ, որ թևերը չուներ. ափերը նման էին ճառագայթող արևների:

Հետո արևի տակ նկարեց շատ ծիտիկներ, որոնք կուշտ էին և արևի տակ տաքանում էին: Իսկ նկարած մարդու աչքերը մեծ-մեծ էին ու փայլում էին արևների պես: Նրա ձեռքերի շուրջն էլ էին ծիտիկներ հավաքվել ու տաքանում էին:



Եվ անցորդները անցնում ու նայում էին թևերը չռած մարդուն, որի ձեռքերը կարծես արևներ էին պահում, և ծիտիկները տաքանում էին արևի ճառագայթների տակ:

Ցուրտ է, ցո՜ւրտ...

Երեխաները վազվզում, թավալվում են ձյունաթաթավ: Բոլորի դեմքերն ու ձեռքերը կարմրատակել են, իսկ գորշ երկինքը ծանրացել է:

Հրաչիկը մրսում է: Ցրտից նրա աչքերը թրջվում են, արցունքները սառչում են կլորիկ այտերի վրա: Նա ոտքերով դոփում է նկարի կողքի ձյունը, սակայն ոտքերը չեն տաքանում, ձեռքերն էլ են մրսում: Սառած արցունքից մրսում են կլորիկ այտերը: Իսկ ձյան վրա ուրախ ժպտում է արևը, և տաքանում են ծիտիկները:

— Տղաս, վազի՛ր, որ տաքանաս...

Հրաչիկը վեր նայեց և տեսավ նույն բարի անցորդին:

— Ձմուշկ չունե՞ս,— հարցրեց անցորդը:

— Ունեմ,— պատասխանեց Հրաչիկը:

— Իսկ ինչո՞ւ չես չմշկում:

— Չեմ ուզում,— պատասխանեց Հրաչիկը ժըպտալով:

Ախր, դու մրսում ես, ինչո՞ւ տուն չես գնում,— հարցրեց մարդը և պինդ-պինդ շոյեց Հրաչիկի դեմքը: Այդ շոյանքը ջերմություն բերեց Հրաչիկի այտերին, և արցունքները գլորվեցին տաքացած:

Հրաչիկը չէր պատասխանում: Նայում էր իր նկարին: Նրա սիրտը դողում էր. վախենում էր, որ մարդիկ կտրորեն ու կփչացնեն իր արևը, մարդը և ծիտիկները:

— Լավ ես նկարել,— ասաց անցորդը և տղայի ձեռքերը իր լայն ու տաք ափերի մեջ առավ:

Տղան հիշեց իր հայրիկին, երբ ինքը դրսից տուն էր գալիս, հայրը ափերի մեջ տաքացնում էր նրա սառած ձեռքերը:

— Իսկ այս մարդը ի՞նչ է անում արևի տակ, ձյան վրա,— հարցրեց անցորդը խիստ հետաքրքրված:

— Ծիտիկներին է հսկում:

— Ա՜, հասկանալի է... իսկ արևը տաքացնում է մարդուն և ծիտիկների՞ն,— ասաց անցորդը, նկարի շուրջը պտտվելով և նորից Հրաչիկի մոտ կանգ առնելով։

— Այո՛։

— Իսկ դու առանց արևի չե՞ս մրսում,— հարցրեց անցորդը։

— Չէ՛, ես չեմ մրսում,— ասաց Հրաչիկը։

Իսկ մարդը իր մեծ ու տաք ձեռքի մեջ նորից պահեց Հրաչիկի սառած ձեռքերը և ասաց.

— Լավ կլինի, որ տուն գնաս...

Հրաչիկը կարծես չէր լսում բարի անցորդի խոսքերը: Նա այնքա՜ն տաք էր զգում...

Բարի անցորդը բռնեց Հրաչիկի գլուխը և նայեց նրան:

Հրաչիկը ցրտից կարմրել էր, բայց ժպտում էր։

— Իմ կարծիքով, դու անպայման տուն պետք է գնաս,— ասաց անցորդը։

Հրաչիկը ավելի լայն ժպտաց։ Բայց այդ ժպիտի մեջ կար մի տխրություն, որից բարի անցորդը, ըստ երևույթին, շատ բան հասկացավ։ Նա թողեց Հրաչիկի գլուխը և իր լայն ձեռքերով թփթփացնելով նրա ուսին, ասաց.

— Գնա, տղաս, քո արևին ո՛չ ոք ձեռք չի տա։



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

# Ժամ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

*Ես մի եղբայր ունեմ, անունը՝ Համլիկ։ Մի ժամանակ տատս նրան օրոր-շորոր էր տալիս գլխից վեր բռնած ու ասում.*

*Համ՛լիկս մի ա՛մլիկ է,*
*Համ՛լիկս մի ա՛մլիկ է...*

*Հենց այդպես, շեշտերն էլ սխալ էր դնում, փոխանակ բառավերջում դնելու։ Ես այդ ժամանակ հինգ տարեկան էի և ոչ միայն հայոց լեզվի շեշտադրությունից բան չէի հասկանում, այլև չգիտեի՝ ինչ բան է այդ «ամլիկ»-ը։ Ինձ թվում էր, որ տատս ուզում է ասել «համով է», «համլիկ բալիկ է», բայց անատամ լինելու պատճառով և ավելի շատ՝ վեր-վեր թռցնելուց շնչասպառ է լինում և «հ»-ն կուլ տալիս։*

*Այդպես գնաց, մինչև որ կարդացի Խնկո Ապոր այն առակը, որտեղ ասում է. «Մի ամլիկ գա՛ռ»...*

*Այսինքն՝ մեկ տարեկան մի գառնուկ...*

*Ահա թե ինչպես էին մեր Համլիկին վոլեյբոլի գնդակի պես ձեռքից-ձեռք անցկացնում, մինչև որ դարձրին երես առած քնկոտի մեկը։ Դե, ո՞վ գլուխը չի պտտվի, ո՞վ քունը չի գա, թե որ այդքան վեր ու վար թռցնես ու օրոր-շորոր տաս։ Էլ չեմ ասում, որ տատս ու մորաքույրերս մի գլուխ կերցնում էին, տաքացնում։ Լինում էր, որ ճաշի ժամանակ Համլիկս նույնիսկ երեսով մեկ թաղվում էր մածնով լի ափսեի մեջ կամ հեռուստացույց նայելիս՝ օրորվում էր աթոռի վրա։ Մինչև կանչում էինք «Համլիկ», նա արդեն, թըր՛մփ, աթոռի տակ էր։ Մի անգամ էլ ընկնելուց քթից այնպիսի արյուն բացվեց, որ սալորի մեծությամբ բամբակներ անցկացինք քթածակերի մեջ։ Հենց դրանից էլ, ազնիվ խոսք, քիթը բավականին մեծացել է, թե չէ, շատ սիրուն տղա էր մեր Համլիկը։*

*Սիրունը՝ սիրուն, բայց թե ի՞նչ օգուտ, որ բութ է։ Այդպես չէ՞ք ասի։*

*— Այո՛։*

*— Իսկ ես կասեմ, ո՛չ, բութ չէ։*

*— Ծույլ է։*

*— Մի՛ քիչ։*

*— Քնկոտ է։*

*— Ճիշտ է. է՛ր։*

# Մեթոդը

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ





— Դասերից էլ ուշանում է։
— Է՛ր։
— Իսկ հիմա՞։
— Ո՛չ։
— Զարմանալի է... Բայց ի՞նչը ուղղեց նրան։
— Իմ մեթոդը։
— Քո՞ մեթոդը...
— Այո՛, ի՛մ մեթոդը։ Բոլորն էլ իրենց փորձերը կատարեցին մեր Համլիկի վրա, որ նա քնկոտ չլինի, դասերից չուշանա, չծուլանա, բայց ոչինչ չօգնեց։ Իսկ իմ մեթոդը...
— Դու մի սրա՞ն նայիր. ի՞նչ է, դու պրոֆեսո՞ր ես, մանկավա՞րժ ես, ի՞նչ ես, որ մի գլուխ՝ ի՛մ մեթոդը, ի՛մ մեթոդը...

Ուրեմն չե՞ս հավատում. դե լսիր։ Այդ բոլորը, ինչ ասացի մեր Համլիկի մասին, ճիշտ էր։ Եթե դու էլ մեր դպրոցից լինեիր, կիմանայիր, ու հաստատելու կարիք էլ չէր լինի։ Այդ բանը դեռ մի ամիս առաջ կհաստատեին ծնողներս և մորաքույրերս, որոնք նրան այնքան էին երես տվել, որ էլ սիրելու տեղ չէր մնացել։ Մնացել էինք ձեռքերն շվար։ Քնկոտ-քնկոտ, բայց այդքա՞ն էլ քնկոտ։ Կուզես զարթուցիչը ականջից կախիր, նրա համար ի՞նչ կա, կկարծի, թե երազում տրամվայ է նստել։ Համլի՛կ, վե՛ր կաց, Համլի՛կ, դպրոց գնալու ժամանակն է. սաս լսո՞ւմ է։ Ոտքից ես քաշում, չի լինում, քիթն ես տրորում՝ վախենում ես նորից արյունը գա, գոռում ես, նա մի լավ շունչ է քաշում ու, մյուս կողքին ընկնելով, ավելի խորը քնում։ Էլ դասերը սովորելու մասին մի հարցրու։ Ինչ արինք՝ չեղավ։ Է՛լ ծնողական ժողով, է՛լ նամակ-նամակի ետևից, մինչև որ գործը բժշկական քննության հասավ։ Քննեցին, թե շատ առողջ երեխա է, մենակ պիտի մարզանք անի, քիչ ուտի, մի խոսքով՝ խելքը գլուխը հավաքի։ Ամենից դժվարը իմ ՛բանն էր. շատ էի ամաչում նրա պատճառով։ Դե, ծնողական ժողովի համար ինձ էին ասում, որ տանը լուր տամ, ստացած «երկուսները» իմ երեսովն էին տալիս։ Ի՞նչ արած. ինչպես ասացի, ամեն ինչ փորձեցինք, մինչև բժշկի տանելը, ու նա էլ, թե՝ մարզանք, քիչ ուտել, վաղ պառկել, վաղ վեր կենալ, և էլի

մի քանի բան։ Դե արի ու այդ բոլորը փորձի։ Այդ բոլորից միայն մեկը կարողացանք անել տալ, դա էլ փոք պատկեր էր, որ արդեն սկզբից կար։ Ոչ մի առավոտ ժամանակին չարթնացավ, քնում էր դասագրքերի վրա, իսկ բժշկի ասածից հետո ախորժակն ավելի բացվեց։ Մարզանքի համար զսպանակ գնեցինք, էնպես էլ չիմացանք, թե ինչ եղավ. մարզասարքեր առանք ասես նրա համար, որ մայրս թթվի տակառի կափարիչի վրա դնի։ Դեռ լավ էր, որ այդպես պրծանք. որովհետև, դրել էինք փողոցի վրա նայող պատշգամբը, և մեր հարևանի երեխան գլորելով փողոց էր գցել։ Մեր բախտից էր, որ մայթի վրա անցորդ չէր եղել։ Է՜հ, ինչ ասեմ, Համլիկի պատճառով ինչե՜ր չենք քաշել։

Այսպես, ծնողներս մի կողմից, իսկ ես մյուս կողմից մտածում ենք, մտածում, բան դուրս չի գալիս։ Ու մի գիշեր, երբ Համլիկը արդեն յոթերորդ քնի մեջ էր, հանկարծ մեկն ասես բոթեց կողքս ու, բը՜ր, ասացի, ամեն ինչ փորձեցինք բան չստացվեց, այս մեկն էլ պիտի փորձեմ։

Լա՞վ լսեք, խոսքն արդեն իմ մեթոդի մասին է։

Դե, Համլիկի շատակերության մասին արդեն գիտեք։ Ուտելու, հատկապես բան ծամելու մեջ մի հատիկ էր, թեկուզ և բուն աչքերը կոխեր։ Ու մինչ նա քնի մեջ երևի ինչ-որ համով բան էր ուտում (որովհետև բերանը շարժվում էր), ես մշակում էի իմ մեթոդը։

Մյուս օրը ես էլ Համլիկի պես ժամանակից շուտ անկողին մտա։

— Համլի՛կ, — ասացի, — դու ուտե՞լ ես շատ սիրում, թե՞ քնել։

— Երկուսն էլ լավ են, — ասաց նա։

— Իսկ եթե այսօրվա կոզինակից լինի՞, — ասացի ես, գրգռելով նրա ախորժակը։

— Որտեղի՞ց կլինի, — փնթփնթաց նա դժգոհ, հիշելով, որ մայրիկը երկու կտորից ավել չէր տվել նրան։

— Կլինի, ուզո՞ւմ ես։

Համլիկի աչքերը փայլեցին, ու նա նստեց անկողնու մեջ։

— Հիմա չէ, առավոտյան, — ասացի ես ժպտալով, — ես իմ բաժինը չեմ կերել։

— Ձեռ տար, գիտեմ, — ասաց նա ու նորից վերմակը քաշեց գլխին, — դու մայրիկից պակաս չե՜ս։

— Կտամ, — ասացի ես, — բայց մի պայմանով. ես կթաքցնեմ, իսկ դու պիտի գտնես։

— Թաքցրու, — ուրախացավ նա, — էստե՞ղ, ներքնակո՞ւմ։

— Ներքնակում, — ասացի ես, — բայց կես ժամից ավելի ժամանակ չեմ տա։

— Մի՛ վախենա, կգտնեմ, — ասաց նա։

— Բայց իմ աչքի առաջ և այնպես, որ դպրոցից չուշանաս։

— Քանի՞ կտոր է, — քիչ լռությունից հետո հարցրեց նա մտազբաղ։

— Չորս կտոր։

— Մե՞ծ են։

— Ամեն մեկը մի լուցկու չափ։

— Հո չե՞ս խաբում։

— Ազնիվ պիոներական։

— Եղավ, — ասաց նա և մի քանի վայրկյան հետո քնեց։

Բերանը նորից գնում էր, գալիս։ Երևի կոզինակ էր ուտում երազի մեջ։

Առավոտյան բացը քնի մեջ էի, մեկ էլ տեսնեմ՝ մեկը քաշում է ոտքս։ Վեր թռա, զարմանք բան. Համլիկն է։

Նայում եմ շուրջս, լույսը նոր է բացվում։

— Թաքցրե՞լ ես, — հարցնում է նա։

— Կոզինակնե՞րը, — աչքերս տրորելով հարցնում եմ ես հազիվ ուշքի գալով։

— Հա՛։

— Ման գա՞մ։

— Ման եկ։



Ու սկսեց. և ո՜նց է փնտրում. մեկ իրեն նետում է դեպի պահարանը, մեկ հայելու սեղանի դարակներն է քաշքշում, մեկ կոշիկների տուփն է քրքրում, մեկ նայում է վերմակի տակ, մեկ՝ ներքնակի, մերթ փռվում է հատակով մեկ ու հագուստեղենի պահարանի տակը հետախուզում։ Մտքովն էլ չի անցնում, որ դրած կլինեմ իմ դպրոցական պայուսակի մեջ։ Եվ ինչպե՞ս անցներ, երբ այդ պայուսակը նրա աչքի փուշն էր դարձել այդ օրերին։ Դե, մինչ նա գետնին ընկած՝ հետաքրքիր համարներ էր կատարում, մայրիկն ու հայրիկը մտան մեր ննջարանը։ Երկուսն էլ զարմացած մեկ ինձ են նայում, մեկ՝ նրան, իսկ ես ժպտում եմ։

— Սուտասա՛ն, դեռ ազնիվ պիոներական էլ ասացիր. բա ո՞ւր է, — վերջապես ասաց Համլիկը։

Այստեղ չկարողացա ինձ պահել ու ծիծաղելով ցույց տվի պայուսակը: Վրա պրծավ և, որ կոզինաղները չտեսավ, աչքերը փայլեցին, ու հա՛փ, երկուսը մի անգամից գցեց բերանը:



— Վա՜յ, անպիտա՛ն,— վրա բերեց մայրիկը,— այդ ո՞րը հասցրեց տեղը գտնել...

Բացատրությունս երկար չտևեց. ես աչքով արի զարմացած ծնողներիս ու պատմեցի մեր գիշերային պայմանի մասին:

Այդ օրը Համլիկը առաջին անգամ դասից չուշացավ: Մեղք չանեմ, ճիշտ է, պատահել էր, որ երբեմն չէր ուշացել. մի անգամ, երբ երրորդ հարկի հարևանը մոռացմամբ բաց էր թողել ջրի ծորակը, և ջուրը ամբողջ գիշերը հոսելով կաթել էր ուղիղ մեր Համլիկի բարձի վրա. մյուս անգամ կռվազան կատուներից մեկը սոսկալի ճիչով, բաց օդանցքից իրեն գցել էր Համլիկի փորին, մի անգամ էլ կարիճ էր կծել:

Այսօր նրան օգնեց իմ մեթոդը:

Երկրորդ օրն էլ այդպես արի, երրորդ օրն էլ, չորրորդ օրն էլ: Չէի ուտում իմ բաժին քաղցրեղեններ, զոհում էի իմ մեթոդին և, իհարկե, չէի ափսոսում, որովհետև Համլիկի մեջ եղած փոփոխությունից ավելի քաղցր բան չէր կարող լինել ինձ համար: Հետո եղան օրեր, որ պարզապես ոչինչ էլ չէի թաքցնում: Ճիշտ է, Համլիկը խռովում էր, թթվում, սակայն շուտով հաշտվում էինք դպրոցի ճամփին: Բայց ես համոզված եմ, որ այդ հրաշագործ կոզինաղներից ավելի քաղցր, ավելի համով մեր Համլիկի համար այն լավ վերաբերմունքն ու գովասանքներն էին, որ նա լսում էր դպրոցում:

Ու շատ չանցավ, մեր Համլիկը առանց գիշերային պայմանի, սկսեց առավոտները ինձանից շուտ վեր կենալ և, ուրս քաշելով, ինձ էլ ոտքի հանել: Տակառով դրված թթուն սկսեց փչանալ, որովհետև մարզաքարերը պետք եկան Համլիկին: Իսկ ինչ վերաբերում է հեռուստացույցի մանկական բաժնին, նա այժմ նստում է մինչև վերջ և, երբ փոքրերիս համար արգելված կինոնկար է լինում, ինքն է վրաս մատ թափ տալիս, թե՝ չի կարելի նայել, թեև ես արդեն տասնհինգ տարեկան եմ:

Դա էլ նրա մեթոդն է, թեև նա էլ ինձ նման ոչ պրոֆեսոր է, ոչ՝ մանկավարժ և նոր-նոր ոտքը դրել է տասնմեկի մեջ:

Ես իմ պատմությունը վերջացրի: Բայց գիտեմ, ձեր մեջ կլինեն այնպիսիները, որ կասեն, թե քո մեթոդը, լավ, ասենք թե հասկացանք, իսկ Համլիկի մեթոդը ո՞րն է. քունը տանում է, դրա համար էլ չի նստում փոքրերին չթույլատրված կինոնկարները դիտելու: Էհ, թող ձեր ասածը լինի. թող մի քիչ էլ բնկոտ համարվի մեր Համլիկը. բայց որ էլ դասերից չի ուշանո՞ւմ, դասերը ջրի պես գիտի՞, ես էլ նրա պատճառով չեմ կարմրո՞ւմ

Սրա՞նց ինչ կասեք...

# ՓԱՌԱՊԱՆԾ ԶՈՐԱՎԱՐԸ



Գայը (Հայկ Բժշկյան) Հոկտեմբերյան ռևոլյուցիայի այն տաղանդներից է, որոնց անունները մենք հիշում ենք հուզմունքով, ջերմ երախտագիտությամբ, անկեղծ հիացմունքով: Իր երկրի պատմությունն իմացող սովետական ամեն մի մարդ լավ գիտե, թե ինչ սխրագործություններ է կատարել Գայի այն լեգենդար դիվիզիան, որն ամենայն իրավամբ կոչվում էր Երկաթյա: 1958 թվականին, Լենինի ծննդավայր Ուլյանովսկում, քաղաքի ազատագրման 40-ամյակի կապակցությամբ հիմնադրվեց հուշարձան՝ ի պատիվ Երկաթյա դիվիզիայի մարտիկների և նրանց հրամանատար Գայի: Հիշեցնենք, որ Գայը 24-րդ դիվիզիայի հրամանատարն էր, իսկ Չապաևը՝ 25-րդ: Մեր երկրի երախտապարտ ժողովուրդները բազմաթիվ երգեր են հյուսել իրենց անձնուրաց զավակներ Ֆրունզեի, Շչորսի, Չապաևի, Գայի, Կոտովսկու և ուրիշ շատ հերոսների մասին:

Իր նամակներից մեկում Գայը գրել է.

«Ես Վոլգայի ափին կռվում եմ սպիտակգվարդիականների դեմ, նշանակում է՝ կռվում եմ մայր Արաքսի ափերին և Զանգեզուրի կիրճերում ծվարած դաշնակցականների դեմ, որպեսզի իմ սիրասուն Հայաստանը, իմ հայ ժողովուրդը ապրի իբրև ազատ ժողովրդի եղբայր»:

Լրացավ փառապանծ զորավար Գայի ծննդյան 75 տարին:

# ԲԱԼԼԱԴ ԳԱՅԻ ՄԱՍԻՆ

ՊԱՐՈՒՅՐ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Տասնութ թվի ահեղ ամառ:*
*Մութ խլրտում, դավեր...*
*Ի՜նչ փորձություն երկրի համար՝*
*Քարուքանդ ու ավեր:*

*Խռովություն է Մոսկվայում,*
*Յարոսլավլում հիմա...*
*Չորս կողմ ռազմի բուն է*
*վայում:*
*Կրկին հրդեհ ու մահ:*

*Գոտեմարտում են անվարան*
*Տանջված որդիք հողի...*
*Նոր դավ... Սիմբիրսկն ու*
*Սամարան*
*Ծանր սրտով թողին:*

*Մռայլ ամպերն են թանձրանում:*
*Տագնապն է խոր այնքան...*
*Միխելսոնի գործարանում*
*Միտինգ բանվորական:*

*Հաղթանակի հաստատ վճիռ:*
*Սակայն այդ նույն պահին*
*Կատարվում է հանկարծ ոճիր՝*
*Այնքա՜ն անմարդկային:*

*Հոսեց արյո՜ւնը Իլյիչի...*
*Եվ բանակը երդվեց*
*Կռվել մինչև շունչը վերջին,*
*Մինչ հաղթանակը մեծ...*

* * *

Սեպտեմբերյան գորշ լուսաբաց.
Հզոր ու լայնահուն
Վոլգան ծփում է տիրաբար,
Հորձանք տալիս խոհուն:

Իր երկաթյա դիվիզիայով
Գայն է այնտեղ արդեն:
Աշնան օրն է բացվում ահով...
Զորքն սպասում է դեռ:

Գայն է գետին նայում անձայն,
Հիշում Թավրիզը գորշ...
Թիֆլիզ... Դպրոցը Ներսիսյան...
Բաքու... Սև հանքախորշ:

Փոխարքայի դեմ մահափորձ...
Հոդվածներ ու գրքեր...
Հետո բանտեր ցուրտ,
գետնափոր...
Աքսոր... Ըմբոստ մտքեր...

Սպայական դպրոց: Մարտեր:
Ռուս-թուրքական ճակատ,
Կռվում է նա թուրքերի դեմ
Ոխով օրինական:

Ստեպներում Ռուսաստանի
Մարտնչում է հիմա
Իր հարազատ Հայաստանի,
Ողջ մարդկության համար...

Ինտերվենտներն ահա այսօր
Հանել են Գայի դեմ
Օդանավեր, հեծելազոր
Եվ սպիտակ զնդեր:

Այնտեղ ջոկատ կա սերբական
Եվ չեխական մի վաշտ,
Գումարտակներ կան
սիմբիրսկյան...
Բախվելու են անհաշտ:

... Ոտքի ելավ Գայը պարթև,
Աչքը հեռուն հառած...
Նրա կոչով զորքը արդեն
Հեղեղվում է առաջ:



* * *

Երջանկության ոչ մի ուղի
Չի հարթվում հեշտ, հանգիստ:
... Չեն խնայում որդիք հողի
Կյանքը հանուն կյանքի:

Չորս օր գրոհ փոթորկային...
Միջօրեին չորրորդ
Սիմբիրսկ մտավ զորքը Գայի,
Որպես հեղեղ մի հորդ:

Ցնծություններ է ողջ քաղաքում՝
Մարդկանց թևավորել.
Արտասվում են, իրար գրկում
Այնպե՜ս եղբայրորեն:

Ջերմ հեռագիրն են Լենինի
Կարդում խինդով. պայծառ.
«Շնորհակալ եմ ձեզանից
Զոհողության համար:

Ազատագրումն իմ քաղաքի
Ինձ ուժ տվեց, դարձավ
Վիրակապը իմ խոր վերքի,
Դեղը ամենալավ»:

... Լայն է բացվում դուռը բանտի,
Նկուղներից խավար
Դուրս են գալիս մարդիկ անթիվ՝
Հուզված ու խանդավառ:

Օղակում է Գային արի
Բազմությունը ահա,
Խո՛սքն է ուզում զորավարի
Լսել շունչը պահած:

Ո՛չ մի կռվում չշփոթված
Գայն է կորցնում իրեն
Եվ խոսում է, խոսում ազդված,
Խոսում է... հայերեն:

Նրան մարդիկ այդ վեհ պահին
Հարազատ են այնքան,
Որ խոսում է քաղցր ու հին,
Իր մայր լեզվով հայկյան:

Եվ ռուսներն են լսում հային.
Հասկանում են նրան.
Այնպե՜ս է պարզ ողջ աշխարհին
Լեզուն եղբայրության:

# ՕՁԱՍԱՐ

*ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ*



Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆ

Ա՜խ, Օձասար, Օձասար...
Փոքր էի դեռ և անհոգ,
Խաղում էի օրն ի բուն,
Փողոցներում մեր փոշոտ,
Ջաղացի մոտ մշտարթուն:
Հայրս գիրկն էր առնում ինձ,
Փոշոտ դեմքս համբուրում.
Հորս գրկում կենսախինդ
Ծաղկում էի ու բուրում...

Ու մի օր էլ եկա տուն՝
Ոտից-գլուխ փոշոտված,
Մայրս նստել էր տրտում,
Աչքերի մեջ՝ սուգ ու լաց:
Վախով լցված մի անտես,
Հարցեր տվի ես անթիվ,
Մայրս խոսեց վերջապես.
— Հայրդ գնում է կռիվ...
— Իսկ մենք, մայրիկ, ամեն օր
Այնքա՜ն կռիվ ենք խաղում...
— Չէ՛, այդ ուրիշ կռիվ է,
Այնտեղ մահ կա և արյուն:
— Իսկ այդ կռիվն արյունոտ
Ո՞ւմն է ախր հարկավոր:
— Դու տեսնո՞ւմ ես է՛ն սարը:
— Հա՛, տեսնում եմ, ի՞նչ կա որ:—
Հայրս՝ ձեռքին ծխախոտ,
Քաշում է ինձ իրեն մոտ.
— Ա՛յ, էդ սարում օձեր կան՝
Մեկը մեկից փոքր ու մեծ,
Դրա համար այդ հսկան
Օձասար է կոչվում հենց:
Եվ մենք պիտի այդ սարում
Օձերի դեմ կռիվ տանք,
Որ ոչ մի օձ աշխարհում
Էլ չխլի ոչ մի կյանք:
— Իսկ ես, գիտե՞ս, մի անգամ
Խփել եմ մի օձի ճուտ...
Բայց դու, հայրիկ, ե՞րբ կգաս:
— Մինչև ձմեռ, գուցե շուտ:

Հայրս գնաց: Լաց: Արցունք:
Իսկ ես նույնիսկ լաց չեղա:
Մայրս ինչո՞ւ է լացում,
Մի իսկական երեխա:
Օձն ի՞նչ է, որ ի՞նչ անի,
Ինքս էլ կերթամ՝ թե ասեն,
Օձասարն էլ շատ մոտիկ,
Հիմա վազեմ՝ կհասնեմ:
Բայց ձմեռներ շատ անցան,
Սպասեցինք մենք երկար,
Ոմանք կռվից ետ դարձան,
Հայրս չկար ու չկար:
Օձասարը ինձ համար
Հրեշ դարձավ, մարդակեր,
Որ արյան պես իր խմած
Կարմիր մորթի է հագել:
— Ասա՛, հայրիկ, իմ անգին,
Ինչո՞ւ էլ չես գալիս տուն,
Մի՞թե օձն է քեզ կծել,
Թե՞ էլ ինձ չես կարոտում...
Ա՜խ, Օձասար, Օձասար...

# ՓՈՔՐԻԿ ՆԿԱՐԻՉԸ

ԼԵՎ. ՎԱԳՆԵՐ

Նկ. ՆԱՆԱ ԳՅՈՒԼԲԵԽՅԱՆԻ

Գարնանը առանձնապես սուր բուրմունք են արձակում հենց նոր փթթող ծառերը, թարմ կանաչը, առաջին ծաղիկները, հերկած հողը։

Ղրիմում գարնանային այդ բոլոր անուշահոտությունը միանում է ծովի սուր և թարմ հոտին։

Հաճելի է այդպիսի օրերին անհոգ թափառել ծովափին և հավաքել ափերին դուրս նետած զանազան քարերը կամ խեցիները, հետո նստել տաք ավազի վրա և դիտել ու գուշակություններ անել, թե որտեղից է գալիս հեռու հորիզոնում երևացող նավը և կմտնի արդյոք իրենց ծովածոցը։

Բայց այդպիսի ուրախությունների մասին այժմ Հովհաննեսը միայն հիշել կարող է։ Փոքրիկ սրճարանի պատուհանից ծովը բոլորովին չի երևում։ Միայն փոթորիկի ժամանակ այստեղ է հասնում նրա շառաչյունը։

Վաղուց է արդեն սրճարանում ոչ մի արտասովոր բան չի պատահել։ Ժամանակը թվացել է դանդաղ, և յուրաքանչյուր օր նման էր նախորդ օրվան։

Այդպես անհամ և անուրախ, ամենօրյա հոգսերի և դառնության մեջ անցավ գարունը Հովհաննեսի համար։ Եկավ Թեոդոսյան չոր ամառը, երբ տոթն սկսվում է արևածագի հետ միասին և մեղմանում միայն մութն ընկնելուց հետո։

Անցյալ տարի Հովհաննեսը կարող էր ընկերների հետ միասին ուզած ժամանակ լողանալ ծովում։ Այն ժամանակ նրանք ինչպե՜ս անհոգ էին զվարճանում ջրի մեջ, դելֆինների նման սուզվում, շուռումուռ գալիս և պղպջակներ առաջացնում ջրի երեսին։

Իսկ հիմա, սրճարանում աշխատանքին սկսելուց առաջ Հովհաննեսը շտապում է տանել մոր ձեռագործը։

Ահա այսօր էլ նա շտապում է մի հարուստ տուն, որ գտնվում է Աբբատսկայա փողոցի վրա։

Նա պետք է շտապի, որովհետև հույն սրճարանատերը չի հանդուրժում, երբ աշխատանքից ուշանում են։

Տղան տխուր հոգոց հանեց։ Պարզ, արևոտ առավոտ է։ Երկինքն ու ծովը, կարծես թե գիշերը լավ հանգստացած, այժմ սիրալիր ժպտում են միմյանց։ Պայծառ արևը շուտով կցրի առավոտյան մշուշը, որով դեռ պարուրված են լեռները, իսկ հիմա նրա ճառագայթները դեռ փայլփլում են ծովի կապտականաչ մակերեսի վրա։

Մի քանի րոպե Հովհաննեսը կանգնած հիանում է այդ անծայրածիր տարածությանը նայելով և մտածում, թե գուցե կհասցներ լողանալ։ Բայց ձեռագործի կապոցը, որ նա ամուր սեղմել է թևի տակ, նրան հիշեցնում է իր պարտականությունը։

Զսպելով լողանալու իր մեծ ցանկությունը, նա արագ իջնում է բլրակից և վազում դեպի Աբբատսկայա փողոցը։

Հանձնարարությունը կատարելուց հետո Հովհաննեսը շուռ է գալիս դեպի հունական սրճարանը, բայց ճանապարհի կեսին մտածում է, որ դեռ երկու ժամ կա, և այնուամենայնիվ կհասցնի լողանալ։

Բայց, դուրս վազելով ազատ տարածություն, նա նորից կանգ է առնում կախարդվածի նման. բաց ծովում հեռվից դեպի ափ է գալիս մի նավախումբ։ Առանձին նավեր հաճախ էին գալիս Թեոդոսիա, բայց խմբերով՝ համարյա երբեք։ Հովհաննեսն իր ամբողջ կյանքում երկրորդ անգամ է նավախումբ տեսնում։

Նա ցանկանում է շուտ նկարել այդ նավերը, քանի դեռ նրանք չեն մտել ծովախորշ։ Նրա գրպաններում միշտ էլ ինչ-որ ածուխի կտորներ կան։ Թեև նա հիշում է, որ հայրն արգելել է ածուխով կեղտոտել պատերը, բայց այս անգամ տղան իրեն զսպել չի կարողանում։ Հովհաննեսը շուռ է գալիս և քիչ հեռվում նկատում պատվարժան քաղաքացուհի Քրիստինա Դուրանտեի գեղեցիկ, սպիտակ տունը։ Մի քանի րոպեից հետո նա արդեն այնտեղ է և մի տեսակ ինքնամոռացության մեջ սկսում է պատի հարթ մակերևույթի վրա դուրս բերել նավերի ուրվագծերը։

Նա առաջին անգամ երանություն է ապրում. ափսոսում է, որ չունի ո՛չ գունավոր մատիտներ, ո՛չ ներկեր, որոնք նա տեսել է շուկայի մի մեծ խանութում։ Եթե նա մատիտներ կամ ներկեր ունենար, կարող էր տալ ծովի կապտականաչ երանգը և առավոտյան արշալույսից շառագունած առագաստները։

Հովհաննեսն այդ մտածեց հենց այն ժամանակ, երբ վերջացրել էր նկարելը, ու հանկարծ ճչաց անսպասելի ուժեղ ցավից։ Քրիստինա Դուրանտեն իր փոքրիկ, բայց ուժեղ մատներով ամուր բռնել էր նրա ականջից։

— Ա՜, ուրեմն այդ դո՛ւ ես միշտ կեղտոտում իմ տան պատերը...

— Բայց ձեր տան պատերը, տիկի՛ն Դուրանտե, այնպես հարթ են, ածուխն այնպես լավ է սահում նրանց վրա, և ի՜նչ գեղեցիկ նկարներ են ստացվում... Դե ինքներդ տեսեք,—հաղթահարելով ցավը խորամանկում է տղան։

— Աստված իմ, նա դեռ համարձակվում է իմ



առաջ զովարանել նկարները,— ձեռքերն իրար է զարկում կինը։

Զգալով, որ իր ականջները բաց են թողնված, փոքրիկ Հովհաննեսը դիմում է փախուստի։

Բայց հեռու փախչելը նրան չի հաջողվում։ Հենց ուղիղ անկյունից դուրս է գալիս քաղաքի ճարտարապետ Կոխը։ Հովհաննեսը թափով վազելիս դիպչում է նրան։

— Ու՞ր ես վազում այդպես,— հարցնում է ճարտարապետը, իրեն հազիվ ոտքի վրա պահելով։

Հովհաննեսը Կոխին լավ գիտի։ Նա ծանոթ է Հովհաննեսի հոր հետ և եղել է նրանց տանը։

Տղան հուզմունքով պատմում է պատահած դեպքը։ Ճարտարապետը բռնելով նրա ձեռքից վճռականորեն ասում է.

— Գնանք, դու ինձ ցույց կտաս քո նկարը։

— Ո՛չ, ո՛չ, ես չեմ գա,— հակառակվում է տղան։— Տիկինը դեռ այնտեղ է։

— Մի՛ վախենա, իմ ներկայությամբ նա քեզ ձեռք չի տա։

Իսկապես, երբ Հովհաննեսն իրեն հովանավորողի հետ միասին վերադարձավ Դուրանտի տան մոտ, նա դեռ շարունակում էր ճվճվալ, բայց ճարտարապետին տեսնելով՝ Քրիստինիա Դուրանտն սկըսում է սեթևեթել և քնքշաբար հանդիմանել Հովհաննեսին։

Ճարտարապետը չոր-չոր ասում է.

— Խնդրում եմ մի՛ հուզվեք, տիկին Դուրանտ, ես իմ օգնականի հետ բանվորներ կուղարկեմ, և նրանք ձեր պատերը այնպես կսպիտակեցնեն, ինչպես դեռ երբեք չեն եղել...

Այլևս նա տիկնոջ հետ չի խոսում, չի լսում նրա շնորհակալությունը, այլ ուշադիր դիտում է փոքրիկ նկարչի նկարները։ Հետո նա բռնում է Հովհաննեսի ձեռքից և փաղաքշանքով ասում.

— Գնա՛նք, սիրելիս, ես ուզում եմ քեզ հետ խոսել և մի բան ցույց տալ իմ տանը։

Այդ ժամանակ Հովհաննեսը հիշում է, որ ինքը պետք է շտապի սրճարան։

Ճարտարապետը փաղաքշաբար շոյում է տղայի գլուխը։ Նա չի կարողանում թաքցնել իր հուզմունքը։

— Մոռացի՛ր սրճարանը։ Դու այլևս այնտեղ չես վերադառնա։ Քեզ անհրաժեշտ է նկարչություն սովորել։

— Իսկ ի՞նչ կասի հայրս, երբ իմանա, որ ես սրճարանում չեմ։ Նա նույնպես ասում էր, որ ինձ անհրաժեշտ է սովորել, բայց դրա համար փող է հարկավոր, իսկ մենք փող չունենք։

— Պետք չէ, տղաս... Այլևս այդ մասին մի՛ մտածիր։ Մենք փող կգտնենք, իսկ այսօր ինձնից կըստանաս գունավոր մատիտներ։ Դու այլևս ստիպված չես լինի ածուխով նկարել։

— Ես մատիտներ կստանա՞մ։

Հովհաննեսի աչքերը փայլում են, նա կանգ է առնում. ուրախության արցունքները խեղդում են կոկորդը։ Ճարտարապետը նույնպես զգացված է։

Նա տղային իր կողմն է քաշում և մեղմ ու սրտառուչ ասում.

— Նայիր ծովին, Օնիկ, և մեր հարազատ քաղաքին։ Շարունակիր այնպես, ինչպես սկսել ես։ Ամբողջ կյանքումդ սիրով պատկերիր այս գեղեցիկ ծովը և նրա ջրերն ակոսող նավերը։

Քաղաքի ճարտարապետ Կոխն ապրում էր մի փոքրիկ, բայց գեղեցիկ տան մեջ։ Սենյակներում կահկարասիներ քիչ կային, դրա փոխարեն պատերին կախված էին բազմաթիվ գծագրություններ, փորագրություններ և Թեոդոսիայի գեղեցկությունը պատկերող մի քանի սքանչելի նկարներ, իսկ պատուհաններից երևում էր ծովը։

Երբ Հովհաննեսը ճարտարապետի հետ մտավ նրա աշխատասենյակը, առաջին հայացքից նրան թվաց, թե գտնվում է նավի մեջ, որովհետև Կոխի աշխատասենյակի լուսամուտները ձվաձև էին և հիշեցնում էին նավի լուսանցույցը։ Եվ տան մեջ վանիլի բուրմունքի նման ինչ-որ հաճելի հոտ էր կանգնած։

Ճարտարապետը մոտեցավ թեք պատրաստված

բարձր գրատախտակին, որի վրա կարելի էր գրել միայն կանգնած վիճակում, և առաջ քաշեց մի փոքրիկ աթոռ։ Այնտեղից նա հանեց դեռևս կնիքը չպոկված, գունավոր պիտակով մի տուփ։ Պիտակի վրա պատկերված էին երկնագույն, կանաչ, կարմիր, նարնջագույն, դարչնագույն մատիտներ։ Ճարտարապետը տուփը մեկնեց իր փոքրիկ հյուրին։

Հովհաննեսը հափշտակեց այն և պինդ սեղմեց կրծքին։ Նրա կյանքի ընթացքում դա երրորդ անգնահատելի նվերն էր. առաջին նվերը խաղալիք առագաստանավն էր, որը նա վաղ մանկության հասակում, ծննդյան օրվա առթիվ ստացավ հորից, երկրորդը նույն նավապետից ստացած ջութակն էր և ահա այժմ էլ երրորդը...

Ճարտարապետը զգայուն մարդ էր, բայց խուսափում էր ցույց տալ այդ։ Դրա համար էլ նա հոնքերը կիտեց և նստեց բազկաթոռին։ Ցույց տալով իր կողքին դրված աթոռը, նա Հովհաննեսին ասաց.

— Իսկ այժմ նստիր և ուշադիր լսիր։

Կոխը մի հայացք գցեց հնամաշ, բայց մաքուր հագնված վտիտ տղայի վրա և շարունակեց.

— Այսպես ուրեմն, դու ցանկանում ես քեզ նվիրել նկարչությանը։ Հավանություն եմ տալիս քո այդ մտադրությանը։ Բնական է, դու երազում ես ներկերով նկարել։ Ճիշտ չե՞մ ասում։

Հովհաննեսը պատասխանելու փոխարեն հարցրեց.

— Իսկ այս մատիտներով կարելի՞ է նկարել ծովը, երբ նա կանաչ է, երկնագույն, սև։

— Նշանակում է, ես ճիշտ եմ ասում, որ դու երազում ես պատկերացվող առարկաներին տալ իրենց բնական գույները,— ուրախացավ Կոխը։

Ճարտարապետը վաղուց այդպես գունավոր չէր խոսել։ Կապալառուների և իր օգնականի հետ նա բացատրվում էր ավելի հասարակ ձևով։ Բայց այժմ, չնայած իր առջև կանգնած էր աղքատ ընտանիքից դուրս եկած մի փոքրիկ տղա, որը նույնիսկ գավառային ուսումնարան դեռևս չէր գնում, պատվարժան Կոխը սրբապղծություն կհամարեր նկարչության մասին այլ կերպ խոսել նրա հետ։

— Բայց դու պետք է իմանաս,— շարունակեց Կոխը,— որ գեղանկարչության մեջ սկզբնականը գծանկարն է։ Գծանկարն է նախորդում գունավոր գեղանկարչությանը։



Ճարտարապետը որոշել էր առաջին դասը նվիրել ուղիղ գծեր քաշելուն։ Նա տղային ծանոթացրեց գծագրական պիտույքներին՝ պինդ ու փափուկ մատիտներին, քանոնին, կարկինին։

Այդ օրը տղան կարծես թե միանգամից մեծացավ։ Նրա առջև հանկարծակի բացվեց մի նոր աշխարհ, որտեղ այնքան շատ հետաքրքիր, անհայտ բաներ կային։ Նա նայում էր իր ձեռքերին և զարմանում, որ նրանք այնպես արագ վարժվեցին այդ բոլորին...

Ճարտարապետը գոհ էր իր աշակերտից։ Այն օրվանից տղան ամեն առավոտ գալիս էր նրա մոտ։ Մի քանի դասից հետո Հովհաննեսն արդեն գիտեր, որ աշխարհում գոյություն ունեն նկարներ, գծագրեր, էսքիզներ։

Առաջին նկարից հետո, որը Հովհաննեսը կատարել էր ինքնուրույն կերպով, Կոխը պատմեց, որ գծագիր նկարները մի ժամանակ մարդկանց ծառայել են որպես գիր, որ հին դարերում փոքրիկ նկարներով նրանք իրենց մտքերն են արտահայտել։ Այսպես, Հովհաննեսն առաջին անգամ լսեց

եգիպտացիների և հիերոգլիֆների մասին։

Մի շաբաթ հետո Կոլյա սկսեց փոքրիկ նկարչին ծանոթացնել հեռանկարչության հետ։

Այդ դասը Հովհաննեսը հիշում էր ամբողջ կյանքի ընթացքում։ Կոլյան իր աշակերտին ցույց էր տալիս կողքի սեղանին դրված գիրքը, սեղանից մի քիչ այն կողմ, պատի մոտ գտնվող գրքերի պահարանը և բաց դռնից երևացող իր որսորդական շանը, որը պառկած էր նախասենյակում։

Այդ օրինակով նա պատանուն սովորեցնում էր, որ բոլոր տեսանելի առարկաները գտնվում են աչքից տարբեր հեռավորության վրա, և որ շատ կարևոր է կարողանալ որոշել հեռավորությունը։

Նա տղային մոտեցրեց Թեոդոսիան պատկերող նկարին և ցույց տվեց, որ նկարիչը կարողացել է այնքան ճիշտ դասավորել ամպերը, ծառերը, բլուրները, որ նկարի մեջ զգացվում է տարածություն, խորություն։

Ապա Կոլյա հանեց Հովհաննեսի վերջին օրերի նկարները։ Նա գովեց այդ նկարները ուղիղ գծերի և առարկաների ճշգրիտ պատկերման համար, բայց նշեց, որ նրանցում դեռևս չի արտահայտված խորությունը, որ երկինքը, ամպերը և նավը նկարված են առանց խորություն տալու։

Կոլյա տաղանդավոր պատանուն ծանոթացնում էր գծագրության և հեռանկարչության սկզբնական կանոններին։

Այդ օրերին պատանի Այվազովսկին մոռացել էր աշխարհում ամեն բան։ Նա անվերջ վարժություններ էր անում՝ նկարելով ճարտարապետի նվիրած լավորակ թղթի վրա։

Շուտով տեղի ունեցան ուրիշ դեպքեր ևս, որոնք որոշեցին փոքրիկ նկարչի հետագա բախտը։

Թարգմ. Ս. ՍԱՀԱԿՅԱՆ




(Չափածո ակնարկ)

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ապրում ենք մենք մի բազմահարկ
Հարմարավետ, մեծ շենքում.
Ե՛վ լայն փիզկուլտ հրապարակ,
Ե՛վ ավազան կա բակում։
Որոշեցինք ջանքերով մեր
Ունենալ և սահադաշտ.
Ինչ խոսք, պետք էր նախ աշխատել.
Քրտինք թափել, այն էլ շա՜տ։
Ու խնդրելու եկանք մի օր
Կառավարչին մեր շենքի,
Որ այդ գործում խիստ կարևոր՝
Մեզ օգնության ձեռք մեկնի։
Երբ լսեց մեզ, նայեց խեթ-խեթ,
Թավ բեղերն իր ոլորեց.
— Դուք կատա՞կ եք անում ինձ հետ,
Ձե՞ք ճանաչում փոքր ու մեծ...
Ո՞վ է տվել այնքան միջոց,
Որ տամ՝ գնաք ջուր ծեծեք.
Ունեք ծնող, ունեք դպրոց,
Հենց նրա՛նց էլ դիմեցեք։
— Մենք չենք խնդրում, որ դուք մեզ տաք
Աշխատող ձեռք ու դրամ.

Ունե՞ք բլունգ, բահ կամ փողրակ,
Ուրիշ ոչինչ, այսքան բան:
Մնացածը դե մենք գիտենք,
Տե՛ս, թե ի՞նչ ենք անելու.
Սահադաշտը երբ ավարտենք,
Դուք էլ կգաք սահելու...
— Չէ, տեսնում եմ չկա պրծում,
Չկորցնենք ժամանակ...—
Նա պահեստի դուռն է բացում.
— Տարե՛ք, ինչ որ կամենաք...

Հաջորդ օրը տեսնեիք դուք
Աղջիկ, տղա ի՞նչ խինդով,
Առած բահեր, լինգ ու բլունգ,
Գործի կպանք եռանդով:
Միայն Արտոն հեռու մնաց,
Չցանկացավ օգնել մեզ:
Ջոկատավար Ջիվանն ասաց.
— Սահադաշտը պետք չի՞ քեզ...—
Արտոն ձեռքն իր թափահարեց.
— Գլուխ գալու գործ չի դա:—
Քթի տակ էլ դեռ ծիծաղեց.
— Ինձ սահնակն էլ ձեռ կտա...

Եվ մեր թափած աշխատանքը
Արդարացավ լիուլի.
Պսպղում էր սահադաշտը,
Ինչպես ողորկ հայելի:
Խնդությանը չկար սահման,
Մեծ ու փոքր անխտիր,
Սահում էինք աշխույժ այնքան,
Չմուշկներով մեր ընտիր:
Սակայն Արտոն գլուխը կախ՝
Լուռ կանգնել էր ծառի տակ.
Հավանաբար, սրտում կար վախ՝
Հո չէի՞նք տա ամոթանք:
Բայց ոչ. նրան մենք կանչեցինք.
Մեր ընկերն է, ի՞նչ արած,
Երբ մոտեցավ, նկատեցինք՝
Քիչ հուզված էր, այլայլված:
Մի պահ հետո Արտոն բացվեց:
Չմուշկները շուտ հագավ.
Նոր վերարկուն մի կողմ նետեց,
Սահեց, ձյունի մեջ ընկավ...

Իսկ արևը երբ մայր մտավ,
Ու ցրվեցինք մենք արագ,
Արտոն դույլը ձեռքին եկավ,
Գործի անցավ մեն-մենակ:
Նա ջրում էր ամեն ակոս
Ու հարդարում վերից վար,
Որ ոչ մի ճեղք և ոչ մի փոս
Սահադաշտում չերևար...

# ԴԵՂԱՏԱՆԸ

*ՕԼԳԱ ՍԱՀԱԿՅԱՆ*

Նորիկն ուզում է գնալ պատշգամբը և ճոճքի խաղալ, բայց ո՞վ կհրի հետևից, երբ չկա Անուշիկը: Նորիկն ուզում է սայլակները կապել իրար պոչից ու քշել սենյակից-սենյակ, բայց ո՞վ կբարձի բեռները, երբ չկա Անուշիկը: Նա ուզում է ամեն օրվա պես վերցնել «Ճանապարհորդ ոզնին» գիրքը և նայել, բայց ո՞վ կկարդա նկարների տակի ոտանավորները, երբ չկա Անուշիկը: Անուշիկը հիվանդ է, Անուշիկը լալիս է: Ահա ննջարանից լսվում է նրա տնքոցը: Նորիկն էլ է տնքում և ավելի բարձր, բայց ափսո՜ս, որ իր կոկորդը չի ցավում, ափսո՜ս, որ իր քթից արյուն չի գալիս, ինչպես Անուշիկի քթից: Նա մատներով ճմռում է քիթը, հետո մի հատ խփում: Բայց արյուն չկա ու չկա: «Ի՜նչ անպետք քիթ է» — զայրանում է նա ու վեր կենում, մոտենում է ննջարանի դռանը և արանքից նայում ներս: Բժիշկը քննում է Անուշիկին: Մայրիկն ու հայրիկն էլ են այնտեղ: Ու շունչը պահած, անհամբեր սպասում է:

Վերջապես բժիշկը դուրս եկավ մայրիկի հետ, նստեց սեղանի մոտ ու սկսեց դեղատոմս գրել: Նորիկն էլ մոտեցավ սեղանին: Ոտների ծայրերին կանգնած, աչքը գցել է դեղատոմսին:

— Օրը երեք անգամ, — ասաց բժիշկը գրելը վերջացնելով:

— Եթե երեք անգամ խմի՝ կլավանա՞, — հարցրեց Նորիկը:

— Անպայման, — ժպտաց բժիշկը:

— Հենց որ խմի՝ կլավանա՞:

— Անպայման, — նորից ասաց բժիշկը:

Նորիկը հանգստացավ և դադարեց ոտների ծայրերին կանգնելուց, բայց այս անգամ արդեն զարմանքով նայում էր բժշկին, որ այդպիսի հրաշք դեղատոմս կարող էր գրել:

Բժիշկը հրաժեշտ տվեց ու գնաց: Հայրիկը ուղեկցեց նրան մինչև դուռը և նախասենյա-

կում սկսեց վերարկուն հագնել։

— Հայրի՛կ, դեղատո՞ւն ես գնում,— հարցրեց Նորիկը։

— Այո՛։ Բե՛ր դեղատոմսը։

— Ես էլ կգամ դեղատուն։

— Կարիք չկա։

— Ո՛չ, հայրիկ, կգա՜մ, կգա՜մ,— ասաց նա՝ ձայնը գլուխը գցելով։

— Գուցե ավելի լավ է գաս, քան թե տանը մնաս ու աղմկես։

Նորիկը շտապ հագավ վերարկուն, վերցրեց դեղատոմսը, չորս տակ ծալեց և դրեց գրպանը։

— Ինձ տուր դեղատոմսը,— ասաց հայրը։

— Ինչու՞,— վիրավորված ասաց Նորիկը՝ վարից վեր նայելով հորը։

— Կկորցնես։

— Չե՛մ կորցնի։

— Ասացի՝ կկորցնես։

— Հայրիկ, հիշու՞մ ես, այդ դու էիր, որ մի անգամ կինոյի տոմսերը կորցրիր…

Հայրը թաքուն ժպտաց և ոչինչ չասաց։

Նրանք դուրս եկան բակ. Նորից ձյուն էր եկել, Ռուբիկը սահնակ էր խաղում մենակ։

— Նստեմ՝ մի քիչ քշիր,— տեսնելով Նորիկին ուրախացավ նա։

Նորիկը լուռ նայեց նրան ու ձեռքերն անգամ գրպանից չհանեց։

— Դե լա՜վ, արի դու նստիր՝ ես քշեմ,— կարծելով, թե իր առաջարկը դուր չեկավ ընկերոջը, ասաց Ռուբիկը։

— Անուշիկը հիվանդ է։

— Հիվա՞նդ է, ինչու՞,— զարմացավ Ռուբիկը։

Նորիկը չպատասխանեց և վազելով հասավ հորը, որն արդեն դուրս էր գալիս բակի դռնից։

Բայց այստեղ էլ դեմ վազեց Զալիկը. նա կանգնեց հետևի ոտներին ու, լեզուն հանած, նայեց Նորիկին, ուզում էր հասկացնել, որ խաղալ է ուզում։ Նորիկը հրեց շանը։ Զալիկը զարմացած աչքերը պլշեց, բայց չհուսահատվեց, նորից կանգնեց հետևի ոտներին ու թաթերը դրեց Նորիկի կրծքին։

— Անուշիկը հիվանդ է,— ճչաց նա ու կըրկին հրեց։ ;

— Ինչու՞,— Ռուբիկի նման զարմացած, կարծես հարցրեց Զալիկը,— ինչու՞ է Անուշիկը հիվանդացել։

* * *

Նորիկը սխուր քայլում է փողոցով. «Դեղը պետք է շուտ տանել»— մտածում է նա ու վազելով հասնում է հորը։

— Հայրիկ, դու էլ վազիր։

Լավ է, որ հայրիկը չի վազում, նրա քայլերը այնքան մեծ-մեծ են. եթե վազի, Նորիկն ու՞ր կմնա։

Դեղատունը հեռու չէր, և նրանք արդեն հասան։

— Հայրի՛կ, ես կտանամ դեղը, ես կարող եմ,— ասաց Նորիկը և հաճախորդների արանքով խցկվեց ու կանգնեց փոքրիկ պատուհանի առաջ, որտեղից բաց են թողնում դեղորայքը։

— Դա քո բանը չի՛, Նորի՛կ,— բարկացավ հայրը։

Բայց Նորիկը արդեն հանել էր դեղատոմսը ու, ոտների ծայրերին կանգնած, ձեռքը մտցրել էր ներս։ Պատուհանի հետևում աշխատող դեղագործ կինը լսում էր հոր ու տղայի խոսակցությունը և ակնոցների տակից նայում Նորիկին.



որի գլխարկի տակից երևում էր միայն ցրտից կարմրած դնչիկը։ Նրան դուր էր գալիս իր այդ փոքրիկ հաճախորդը և, աշխատելու հետ միաժամանակ, խոսեցնում էր նրան։

— Այդ ու՞մ համար ես տանելու դեղը։

— Անուշիկի։ Նա իմ քույրիկն է։ Դեղը հիմա՛ կտա՞ք։

— Ո՛չ։ Դեղը կստանաս երկու ժամից հետո։ Չէ՞ որ պետք է դեռ պատրաստենք։

— Չէ՛, հիմա տվեք, Անուշիկը շատ հիվանդ է։

Բոլորն սկսեցին ծիծաղել. և՛ դեղագործը, և՛ հայրիկը, և՛ մի քեռի, որ մեծ պորտֆել ուներ ձեռքին։

— Իսկ ինչի՞ց է հիվանդացել, — հարցրեց դեղագործը լրջանալով։

Նորիկը մտքի մեջ ընկավ։

— Եթե ասեմ, դեղը շուտ կտա՞ք։

— Գուցե և տամ, — խորամանկ ժպտում է դեղագործը։

Նորիկը մեկ էլ է մտածում։

— Հայրիկ, ասե՞մ...

— Ասա, — հայրիկի փոխարեն պատասխանեց դեղագործը, — գուցե դա շա՜տ կարևոր է։

— Անուշիկը հիվանդացավ երևի նրանից, որ գդալը թեյի մեջ տաքացրի ու դրի նրա ականջին...

— Այո՛, դրանից կարելի է հիվանդանալ, — ասաց դեղագործը և նրա ժպտուն աչքերը չարացան։

— Դու անխիղճ տղա ես, — բարկացած ասաց սև ձեռնոցներով մի կին, որ կանգնած էր մոտիկ։

— Կամ նրանից հիվանդացավ, որ նրա թվաբանության տետրակի մեջ կարմիր մատիտով արջ նկարեցի...

— Ա՞րջ, — խիստ ձայնով հարցրեց հայրը։

— Ձագն էլ կողքին։

— Հետո՞, — հարցրեց դեղագործը։

— Հետո Անուշիկը լաց եղավ, լաց եղավ, տետրակը պատռեց, արջերն էլ հետը...

— Այո՛, դրանից էլ կարելի է հիվանդանալ, — նորից հաստատեց դեղագործը։

— Հետո էլ ափսեի միջի բոլոր նարինջները կերա, Անուշիկին բաժին չթողեցի...

հետո որ ամեն օր նա է կապում կոշիկիս կապերը։



Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԻՆԱՍՅԱՆԻ

— Խեղճ Անուշիկ, էլ առողջություն կմնա՜, — չարացած նայելով Նորիկին՝ ասաց սև ձեռնոցներով կինը։

— Եվ դու կարծում ես այդ դեղը խմելով Անուշիկը կլավանա՞, — ասաց դեղագործը։

— Չի՞ լավանա... — վախեցած թոթովեց Նորիկը։

— Իհարկե, ոչ. միայն այն ժամանակ դեղը կօգնի, երբ դու վերջ տաս այդ բոլորին։ Իսկ խոսք տալիս ես, որ այլևս չես անի։

Բոլորը նայում էին Նորիկին ու սպասում. և՛ դեղագործը, և՛ հայրիկը, և՛ սև ձեռնոցներով կինը, և՛ մի ուրիշ քեռի, որ մեծ պորտֆել ուներ ձեռքին։

— Խոսք տալիս եմ, — գլուխը կախ, լացակումած, շշնջաց նա։

— Այդ ուրիշ բան է։

Նա վերցրեց Նորիկի դեղատոմսը և վրան գրեց.

«Արտակարգ դեպք։ Բաց թողնել հենց հիմա»։

Քիչ հետո Նորիկը դեղն ստացած տուն հասավ։ Նրան ոչ ոք չկանգնեցրեց բակում. ոչ Ռուբիկը, ոչ Զալիկը։ Եվ ո՞վ կարող է կանգնեցնել մի տղայի, որը վազում է, և որի ձեռքին դեղի շիշ կա։

# ՁՄԵՐՈՒԿԻ ԿՃԵՊԸ

ԶԱՐԵՀ ՏԵՐ-ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՀՈՎՆԱԹԱՆՅԱՆԻ

Վաչիկը ճաշի վերջին պատառը բերանը դնելով, հափշտակեց խաղողի ողկույզը և վազեց դուրս։

Այսպես էր Վաչիկի սովորությունը։ Ծնողների բազմաթիվ նկատողություններն ու պատիժները ազդեցություն չէին թողնում նրա վրա։ Իհարկե, Վաչիկը վախենում էր հատկապես հայրիկից և նրա ներկայությամբ չէր համարձակվում այդպիսի բան անել, բայց հայրիկը հաճախ չէր կարողանում ճաշին ներկա լինել։ Վաչիկն էլ օգտվում էր այս հանգամանքից։

Նա հիմա արդեն յոթ տարեկան է, բայց դարձյալ մնացել է նույնը։ Մի պատառ բերանը դնելով, նա վազում է բակի պատշգամբը։ Նայում է ներքևում խաղացող երեխաներին և երբեմն էլ գոռում նրանց վրա.

— Է՜, լավ չես կարողանում խփել գնդակը, ա՛յ, եթե ես լինեի...

Վերադառնալով, նորից վերցնում է մի պատառ և այս անգամ էլ վազում է փողոցի պատշգամբը, որ նայի, թե ինչ է կատարվում փողոցում։ Եվ այսպես շարունակ։ Իսկ նրա շուրջը կարծես մի իսկական աղբանոց լինի. է՛լ հացի փշրանք, է՛լ բողկի կտոր, կանաչիի մնացորդ, գդալից կաթած կերակուր։ Դե, իհարկե, այդպես կլինի, չէ՞ որ նա միշտ կանգնած է ուտում։

— Տասը րոպե չկա, որ մաքրել եմ բնակարանը և ահա խնդրեմ,—դժգոհում է մայրիկը. մինչև ե՞րբ դու այդպես անկարգ պիտի մնաս, դու արդեն փոքր չես, մեծ տղա ես, աշնանը դպրոց պիտի գնաս։

Այսօր հայրիկը տանն է։ Նրանք միասին ճաշեցին։ Վաչիկը հայրիկի վախից տեղից չշարժվեց։ Ձմերուկ էին ուտում, երբ լսվեց հեռախոսի ձայնը։ Հայրիկը շտապեց պատասխանել։ Այդ պահին Վաչիկը խլեց ձմերուկի մի շերտ և վազեց դուրս։

Հայրիկին շտապ կանչել էին։ Նա աստիճաններով իջնելիս տեսավ Վաչիկին, որն ընկերների հետ ձմերուկ էր ուտում և կճեպները շպրտում աստիճանների վրա։

— Վաչի՛կ, անմիջապես նե՛րս...

Եվ չհասցրեց խոսքը վերջացնել, ընկավ մեջքի վրա, սահեց մինչև ցած և անշարժացավ։

Վաչիկը չհասկացավ, թե ինչ կատարվեց և շատ զարմացավ։ Հարևանները դուրս թափվեցին, մայրիկը լաց էր լինում։ Վաչիկն անընդհատ լսում էր «ձմերուկի կճեպը», «անկարգության հետևանք» բառերը։ Հետո եկան սպիտակ խալաթ հագած մարդիկ, հայրիկին դրին պատգարակի վրա և տարան։ Վաչիկն սկսեց բարձր ձայնով լաց լինել։ Բոլորը նրան հանգստացնում էին։ Իսկ մայրիկը սեղմել էր կրծքին և շոյում էր.

— Լաց մի՛ լինի, բալիկս, վախեցա՞ր, հա՞։ Ոչի՛նչ, հայրիկին բան չի պատահի...

— Ձմերուկ եմ ուզում, — ասաց Վաչիկը շարունակելով լաց լինել։ Մայրիկը նրան ձմերուկ տվեց։ Վաչիկը վերցրեց ձմերուկի շերտը և շտապեց բակ։ Ուտելուց հետո կճեպը շպրտեց գետնին, բայց մի պահ կանգ առավ, նայեց ձմերուկի կճեպին, ապա մոտեցավ, վերցրեց և գցեց աղբարկղը։



# ԴԵՍԻՏՈՆ

ՀԵԿՏՈՐ ՕԵՍՏԵՐՀԵԼԴ

Դեսիտոն մի փոքրիկ առյուծ էր։ Նա դեղին լուսամուտներով և կարմիր տանիքով երկնագույն մի տնակ շինեց իր համար։

Տնակը դուրս եկավ այնքան գեղեցիկ, որ Դեսիտոն մտածեց. «Ես կծախեմ այս տնակը և ստացածս փողով դդյակ կառնեմ»։



«Ես ջութակով լավ-լավ եղանակներ կնվագեմ, իսկ լողները ինձ կնվիրեն իրեր, հետո իրերը կվերցնեմ ու կփոխեմ դղյակի հետ»։

Բայց Դեսիտոն այնքան վատ էր նվագում, որ գազանները նրան սկսեցին քարկոծել։ Դրանից հոգնած՝ Դեսիտոն ջութակը փոխեց մեքենայի հետ։

«Ես մեքենայիս վրա մի փոքրիկ դրոշակ կտնկեմ և կդարձնեմ տաքսի։ Դպրոցական գազանիկներին կլցնեմ մեջը, կտանեմ դպրոց։ Այդ ձևով ես այնքան փող կաշխատեմ, որով հնարավոր լինի մի դղյակ առնել»։

Բայց Դեսիտոն մոռացել էր, որ անտառում ոչ ոք փող չունի, և հենց այդ պատճառով էլ ստիպված եղավ մեքենան փոխել խոհանոցի հետ։

Դեսիտոն սկսեց պատրաստել հրաշալի կարկանդակներ, համեղ ուտելիքներ և բացեց հրուշակեղենի այնպիսի մի խանութ, որ տեսնողը հիացած էր մնում։

Բայց Դեսիտոն էլի ոչ մի շահ չստացավ. դարձյալ փող ունեցող չգտնվեց։ Եվ Դեսիտոն այս անգամ էլ ստիպված եղավ խոհանոցը փոխել մի տուփ ներկի



Բայց անտառում փող ունեցող չգտնըվեց։ Դեսիտոն ստիպված եղավ տնակը փոխել ջութակի հետ։

հետ։ Բայց հիմա նա արդեն գիտեր, որ անտառում ոչ ոք փող չունի։

Պեսիտոն փակցրեց մի մեծ ցուցանակ, որի վրա գրված էր. «Ով ինձ մի գեղեցիկ դղյակ տա, ես կնկարեմ նրա գեղեցիկ դիմանկարը և կտամ իրեն»։





Մոտ եկավ մայր Փիղը և ասաց.

— Պայմանի հետ ես համաձայն եմ։ Եթե. դու լավ նկարես ինձ, ես քեզ մի հրաշալի դղյակ կտամ։

Այստեղ Պեսիտոն մտածեց. «Վերջապես ինչ ուզում էի՝ գտա»։

Փիղ մայրիկի դիմանկարը շատ լավ ստացվեց և այնքան դուր եկավ նրան, որ խոսքը կատարեց և Պեսիտոյին նվիրեց մի դղյակ։

Բայց արի ու տես, որ այդ դղյակը հենց այն դեղին լուսամուտներով, կարմիր տանիքով երկնագույն տնակն էր, որը Պեսիտոն փոխել էր Ջութակի հետ։

Իսպաներենից թարգմանեց՝
Ի. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ



# ՁՄԵՌԱՅԻՆ ՀԵՔԻԱԹ

*ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ*

Մանուկները դուրս թռան.
— Ձյուն է գալիս. ջա՜ն-ջա՜ն-ջա՜ն...
— Ձյուն չէ,— խնդաց տատիկը:
— Վա՜յ, — զարմացավ Սաքիկը:—
Ձյուն է, ձյուն է, չգիտե՞ս.
Հապա մի լավ նայիր՝ տե՛ս...
— Դե լավ, ձյուն է. հետո՞ ինչ:
Ա՛յ, մտածենք դուք մի քիչ.
Ասեք՝ ինչի՞ է նման
Թափվող ձյունը թրթռան.
Թե սրամիտ լինենք շատ,
Ձեզ կպատմեմ մի հեքիաթ:
— Խտուտիկ է, խտուտի՜կ,
Օգի վրա՝ պուտպուտիկ:
Ձմռան կեսին՝ խտուտի՞կ,
Հրաշք է, չէ՞, ա՛յ տատիկ:
— Ի՞նչ խտուտիկ... չէ՛, Սեդա՛,
Ձմեռ պապի խաղն է դա.
Թուղթը մանրիկ կտրատում,
Բուռ-բուռ ներքև է թափում:
— Ո՛չ.., Ամպերից շատ վերև
Օդանավ կա ոսկեթև.
Շաղ է տալիս պարաշյուտ,
Որ մենք... ամպից թռչենք շուտ:
— Չէ՛... Հավաքած բամբակը
Գյուղ էր տանում Փայլակը,
Անիվն ամպին դեմ ընկավ,
Սայլակն իսկույն շուռ եկավ:
Շուտով կուղղեն սայլակը,
Էլ չի թափվի բամբակը:
— Լուսին տատը մաղն առել,
Հսկա պարկը բաց արել
Ու մաղում է անդադար
Ճերմակ ալյուր ու շաքար:
Հետո ծովից ջուր կառնի,
Տաշտով խմոր նա կանի,
Հաց կթխի ու գաթա,
Թոռնիկներին իր կտա,—
Ասաց շեկլիկ Մարտիկը:
— Ապրե՛ք,— գովեց տատիկը,—



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Որ հնարել լավ գիտեք:
Ելեք բամբակն այդ կիտեք,
Բլուր շինեք հիմա դուք,
Բերեք սահնակ ու սահուկ,
Ուրախ-զվարթ խաղացեք,
Մաքուր օդում թարմացեք:
Իսկ երբ լինի իրիկուն,
Դուք էլ հոգնեք ու գաք տուն,
Ձեզ մի հեքիաթ կպատմեմ,
Որը միայն ես գիտեմ:

# ԱՆՎԱԽ ՍՈՍԸ



ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ

Նայիր հապա մեր Սոսին
Այս պստլիկ հերոսին.
Գազաններից ահ չունի,
Ինչե՜ր ասես չի անի:
Խաղանկյունը նրա, տե՛ս.
Գազանանոց է ասես.
Է՛լ ցիռ, վագր ու լուսան,
Է՛լ թռչուններ զանազան...
Եվ բոլորին նա ծեծում,
Ահ է տալիս, հալածում,
Գայլին դրած ծնկի տակ,
Հասցնում է մի ապտակ.
Պոչն է ձգում աղվեսի,
Դնչին խփում հովազի...
Չէ՞, որ նա չի վախենում,
Ինչե՜ր ասես չի անում:
Ահա մատի մի հարված,
Հսկա փիղն է ընկնում ցած.
Հետո բռնած կնճիթից,
Կախ է տալիս ճկույթից...
Հիմար արջուկը եկավ
Ու մեր Սոսի ձեռն ընկավ.
Եվ սա էլ, տե՛ս, քոթոթին
Առնում, դնում է քթին
Ու քթից ցած գլորում,
Հետո պոչը ոլորում...
Չէ՞ որ նա չի վախենում,
Ինչե՜ր ասես չի անում:
Առյուծն հպարտ ու հզոր,
Սոսի մոտ խեղճ է, անզոր.
Տե՛ս, ճանկերից նա բռնած
Գրկում է ու դնում ցած,
Մատը բերանն է տանում,
Ասես ժանիքն է հանում...
Կոկորդիլո՜ս: Ա՛յ քեզ բան,
Սոսը գրկում է նրան,
Ձեռքերի մեջ՝ վեր ու վար,
Թռցնում է անդադար...
Չէ՞ որ նա չի վախենում,
Ինչե՜ր ասես չի անում:













# ՍԱԼԻՆ ՈՒ

(Անգլիական

*Սալին հաճախ կորցնում էր լուցկիները և շատ էր ջղայնանում, երբ փնտրում ու չէր գտնում: Մթնել էր, հարկավոր էր մոմը վառել: «Ո՞րտեղ է լուցկին, ու՞ր է կորել,— գոռում էր Սալին և ոտքը ուժեղ խփում գետնին:— Ախր ես մոմակալի մոտն էի դրել, ոչ ոք չի եղել այստեղ, ես էլ մենակ եմ այս տանը, հապա ու՞ր է գնացել լուցկին»:*

*Երկար որոնումներից հետո գտավ: Հիշեց, որ առավոտը միստր Թուխլը վերցրել էր նրանից լուցկին՝ ծխամորճը վառելու, իսկ երբ վերադարձրել էր, ինքը շտապ շպրտել էր պատուհանի գոգը, փոխանակ դնելու իր իսկական տեղը՝ մոմակալի մոտ:*

*«Այսպես չի լինի,— մտածեց Սալին կըշտամբելով իրեն:— Դու քո ժամանակը վատնում ես փնտրտուքով: Առավոտները դժվարանում ես վառել վառարանը, գիշերն էլ՝ մոմը, որովհետև լուցկին չես գտնում, մինչև ամեն ինչ տակնուվրա չանես: Այսուհետև զգույշ եղիր և ավելի ապահով տեղ ընտրիր... Գտա՛. գոգնոցիս գրպանը, միշտ ինձ հետ կլինի լուցկին»: Նա լուցկին դրեց գրպանը. շատ գոհ էր իր գյուտից, ամբողջ օրը երգ էր մրմնջում քթի տակ: Տիկին Ֆենին այցելեց նրան և պատմեց օրվա նորությունները: Հետո միասին թեյեցին: Նրա գնալուց հետո, Սալին հավաքեց սեղանը, լվաց ափսեները:*

*Սկսեց մթնել: Սալին ուզեց վառել մոմը, բայց լուցկին չկար ո՛չ սեղանի վրա, ո՛չ էլ մոմակալի մոտ, մոռացել էր, թե որտեղ է դրել: Բարկացավ. «Գուցե թողել եմ վառարանի մոտ», այնտեղ էլ չկար:*

*«Ձանձրացա, հոգնեցի... Լավ, գնամ հարևանից փոխ վերցնեմ...»:*

*Գնաց:*

*— Ոչ մի հոգս չունեմ, վերջինը հենց նոր վառեցի,— եղավ հարևանուհի Քրամսի պատասխանը:*

# ԼՈՒՑԿԻՆԵՐԸ

հեքիաթ)

Սալին կանգնեց մի ուրիշ հարևանի՝ միստր Թուիքի տան դռան առջև: Վերջինս, երբ բացեց դուռը և տեսավ Սալիին, ուրախացած բացականչեց.



— Օհո՜, խնդրե՛մ, խնդրե՛մ, տիկի՛ն Սալի, ինչո՞վ կարող եմ օգտակար լինել:

— Խնդրում եմ մի տուփ լուցկի տաս, իմը կորցրել եմ,— ասաց Սալին:

— Խնդրեմ, սեղանի վրա է, վերցրո՛ւ:

— Միստր Թուիք, բոլորը վառել ես,— ասաց Սալին, ցույց տալով դատարկ տուփը:— Ուրիշն ունե՞ս:

— Ունեմ, բայց ձեղնահարկումն է, բեր մոմակալը:

Սալին վերցրեց մոմակալը և միստր Թուիքի հետ բարձրացավ աստիճաններով:

Հազիվ բաց էին արել մառանի դուռը, երբ լուսամուտից փչեց քամին և հանգցրեց մոմը՝ թողնելով երկուսին խավարի մեջ:

— Վա՜յ,— բացականչեց Սալին:

— Ոչինչ,— հանգստացրեց միստր Թուիքը,— պահարանի վերևի դարակում լուցկիներ կան:

Միստր Թուիքը աթոռի վրա կանգնած՝ ձեռքը պարզել էր դարակի խորքը, շոշափում էր, բայց ոչինչ չէր գտնում. փորձեց կանգնել ոտքի մատների վրա, որ ձեռքը հասներ: Հանկարծ աթոռը շրջվեց, և միստր Թուիքը ահռելի թրխկոցով տապալվեց հատակին:

— Օ՜հ, օ՜հ, ա՛յ, ա՛յ, ա՛յ, ջարդվեցի՜,— սարսափած գոռաց միստր Թուիքը:

Սալին այնքան էր կորցրել իրեն, որ մոմակալը գցեց գետնին: Հենց այդ պահին նա զգաց, որ գոգնոցի գրպանում լուցկի կա: Անմիջապես դուրս բերեց տուփը, վառեց մոմը և շտապեց միստր Թուիքի մոտ: Օգնեց նրան իջնելու աստիճաններից, մաքրեց, դեղեց, կապեց, բայց միստր Թուիքը, չգիտես ինչո՞ւ, կիտել էր հոնքերը և բարկացած նայում էր Սալիին:

— Ինչո՞ւ ես այդքան բարկացած,— հարցրեց զարմացած Սալին:— Ես մեղավոր չեմ, որ դու գլորվեցիր, հարկավոր էր զգույշ լինել, իսկ ես, տեսնո՞ւմ ես ինչքան բարի ու հոգատար եղա:

— Ես կարծում եմ դու շատ վատն ես,— ասաց միստր Թուիքը:

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

*Սալին հուզվեց, սկսեց լաց լինել:*

*— Ինչո՞ւ, չէ՞ որ ես քեզ ոչ մի վատություն չեմ արել, — հեծկլտում էր նա:*

*— Ա՛յ խելոք, դու եկար ինձանից խնդրելու մի տուփ լուցկի, քո պատճառով բարձրացա աթոռի վրա և երբ ընկա ու վիրավորվեցի, դու ի՞նչ արիր:*

*— Ի՞նչ արեցի, վառեցի մոմը, որ տեսնեմ, թե ի՞նչ էր պատահել քեզ, — հեկեկաց Սալին:*

*— Այո՛, — ասաց միստր Թուիքը, — դու գրպանիցդ հանեցիր քո լուցկու տուփը, մինչդեռ եկել էիր լուցկի խնդրելու և ինձ գցեցիր փորձանքի մեջ: Ինչպե՞ս ես համարձակվում լուցկի խնդրել ինձնից, երբ գրպանումդ կա:*

*— Օ՜հ, սատանա՜ծ իմ, ի՜նչ հիմարն եմ, հիշեցի, մոռացել էի, թե որտեղ եմ դրել:*

*— Խնդրեմ, գնա տուն և մի՛ ցեխոտիր իմ գորգը քո արցունքներով, ես շատ եմ զայրացած:*

*Սալին գնաց: Կհավատա՞ք, եթե ասեմ, որ տուն հասնելիս նա ձեռքը տարավ գզնոցի գրպանը, բայց լուցկու տուփը չկար. Թողել էր միստր Թուիքի մոտ:*

*Սալին մտավ անկողին. ինչպե՞ս համարձակվեր նորից գնալ միստր Թուիքի մոտ և բերեր իր լուցկին:*

*Այդ օրվանից նա լուցկու տուփը պինդ կապում էր մոմակալին:*

*Անգլերենից թարգմ. Ն. ՖՐՈՒՆՋՅԱՆ*

## ԾԻՏԻԿՆ ՈՒ ՀԱՏԻԿԸ

*ՀԵՂԻՆԵ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Տղան հագած տաք վերարկուն,
Լուռ շրջում էր պատշգամբում.
Ծիտիկների կերի համար,
Նա մի տեղ էր փնտրում հարմար:
Պատուհանի գոգին փռեց
Ու հարդարեց գարի մի բուռ,
Հետո բերեց խոհանոցից
Կողքին դրեց ամանով ջուր:
Երբ ներս մտավ, նա վերարկուն
Հանեց, կախեց կախարանից,
Նստեց խաղաղ, տաք սենյակում՝
Ու դուրս նայեց պատուհանից:
Մի պստլիկ, սիրուն ծիտիկ
Պատշգամբում ման է գալիս,
Ոստոստում է մեկ դես, մեկ դեն,
Բայց հատիկին մոտ չի գալիս:
Տղան խղճաց խեղճ ծիտիկին,
Ուզեց օգնել այդ վախլուկին.

—Ծիտիկ-միտիկ, դե՛սը մտիկ,
Մի՛ վախենա, արի՛ մոտիկ,
Թռի՛ր այստեղ, գոգին տիտիկ,
Կտցի՛ր ու կեր գարու հատիկ:—
Ծիտը եկավ ու մոտեցավ
Գարին տեսավ՝ ուրախացավ,
Բայց հենց մի հատ կտցահարեց,
Տղան ուժգին ծափահարեց:
Ծիտը վախից հեռու թռավ,
Խեղճ տղան իր տեղում սառավ.
«Ա՛յ, ծիտիկ ջան, ինչու՞ թռար,
Ինչու՞ ծափից դու վախեցար.
Չես հասկանում բա դու, ինչ է,
Որ ապակի կա մեր միջև...
Դե լավ, արի՛, էլ մոտ չեմ գա,
Էլ չեմ նայի ու ծափ չեմ տա.
Թռի՛ր այստեղ, տոտի՛կ-տոտի՛կ,
Կտցի՛ր ու կեր գարու հատիկ:




ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Մա՛յրիկը պառկեցրեց Արմենին։

— Քնի՛ր, բալիկ ջան, բարի գիշեր։

— Քունս չի գալիս։

— Երեսդ շուռ տուր պատին, քունդ կգա։

Արմենն այդպես էլ արեց, բայց մի րոպե չանցած, շրջվեց.

— Չի գալիս, մա՛ ջան։

— Արդեն ուշ է, պիտի քնե՞ս, թե՞ չէ,— ջղայնացավ մայրիկը։

— Է՛, ի՞նչ անեմ, որ աչքերս նորից բացվում են։

— Փակիր ու ոչնչի մասին մի՛ մտածիր։ Ա՛յ, ծիտիկը լուսամուտից նայում է, ամեն ինչ տեսավ ու լսեց։ Ասում է. «Սա ի՞նչ անհնազանդ երեխա է, նրա համար ո՛չ մի խաղալիք, ո՛չ մի քաղցրավենիք, ո՛չ մի միրգ չպիտի բերեմ»։

Արմենը գլուխը բարձրացրեց ու նայեց պատուհանին։ Դուրսը մութ էր ու ոչինչ չէր երևում։

— Հիմա որ խելոք քնեմ, կբերի՞,— սկսեց բանակցել Արմենը։

— Կբերի, իհա՛րկե, կբերի։

Արմենը մի քիչ մտածեց, հետո ասաց.

— Բարի գիշեր, մա՛ ջան։

Մայրիկը համբուրեց Արմենի թուշը։ Տղան շուռ եկավ դեպի պատն ու աչքերը փակեց։ Բայց քունը որտեղի՞ց գա։ Արմենը այնքան շատ վիճեց, որ քունը փախավ։ Տեսնեմ՝ քունը ու՞ր փախավ. չլինի՞ բակ իջավ ու մութի մեջ թաքնվեց։ Տեսնես ո՞ր ծառի հետևն է մտել։ Լավ կլիներ քնի հետ պահմտոցի խաղալ։ Բայց ծիտիկը խիստ է։ Եթե ինքը չքնի, նա կբարկանա, փող չի տա հայրիկին, հայրիկն էլ ոչ խաղալիք կառնի, ոչ էլ միրգ ու քաղցրավենիք։ Ծիտիկը փոքր է, բայց ամեն ինչ գիտի և ինչե՜ր ասես, որ չի կարող անել։ Անցյալ օրը նա եկավ ու երկար տկտկացրեց լուսամուտի ապակին։ Արմենը չէր հասկանում, թե նա ինչ էր ասում։ Իսկ մայրիկը հասկանում է ծիտիկների լեզուն։ Նա ականջ դրեց տկտկոցին, ապա Արմենին բացատրեց, թե ծիտիկն ինչ խրատներ արվեց։ Քիչ առաջ Արմենը մայրիկին բարկացրեց։ Չլինի՞ թե պատժելու համար ծիտիկը խաղալիքները վերցնի ու տանի։ Արմենն ուզում էր շրջվել և հարցնել, թե ծիտն այդպիսի բան կանի՞։ Բայց մտածեց, որ մայրիկն ավելի շատ պիտի բարկանա և ասի. «Դեռ չե՞ս քնել»։ Դրա համար էլ Արմենը ոչ շրջվեց, ոչ էլ հարցրեց։

Քունն արդեն թաքուն մտել էր Արմենի կոպերի տակ և կամացուկ փակում էր աչքերը, երբ հնչեց դռան էլեկտրական զանգը։ «Հայրիկն է»—կիսարթուն մտածեց Արմենը։ Հետո թմրած վիճակում լսեց հոր ձայնը.

— Շու՞տ քնեց։

Ձայնը հնչեց շատ մոտիկից, և Արմենն իր թշի վրա զգաց հոր շուրթերի հպումը։

Արմենն ուզեց աչքերը բացել և փաթաթվել հայրիկին։ Սակայն միտքը փոխեց. «Տեսնենք՝ մայրիկն ի՞նչ պիտի ասի»։

— Հազիվ քնեց,— ասաց մայրը,— օրհնվի ծիտիկը, եթե նա չլիներ...

Հայրը պատասխանեց.

— Ո՛չ։ Երեխան ժամանակին պիտի ուտի, քնի, արթնանա, լվացվի, խելոք մնա առանց որևէ ծտի միջամտության։ Իսկ երբ Արմենն իմանա, որ հրաշալի ծիտ գոյություն չունի, այն ժամանակ ի՞նչ պիտի անես։

— Մի բան կմտածեմ։

«Ուրեմն ծիտը սուտ է» — մտածեց Արմե-

նը վիրավորված և քիչ մնաց լաց լինի: Նա ընկճվեց, խռովեց, երեսը սեղմեց բարձին: «Սո՜ւտ է»—ուզում էր գոռալ Արմենը, բայց ձայնը խեղդվում էր կոկորդում: Նա վերմակը քաշեց գլխին: Վերջապես, մտքերը շաղվեցին, և նա սուզվեց քնի մեջ:

Լուսադեմին Արմենը երազ տեսավ:

Ինքը ավազի մեջ փոս էր փորում: Հոգնեց, բահը մի կողմ դրեց: Մի թռչուն եկավ



Նկ. ՄԱՆՈՒԿ ՂՐԴՅԱՆԻ

թառեց բահի կոթին և մարդկային հասարակ լեզվով ասաց.

— Բարի լո՜ւյս, Արմե՛ն:

Ինքը զարմացած նայեց թռչնակին:

— Ինձ չե՞ս ճանաչում,—շարունակեց թռչնակը,—ես քո ծիտն եմ, քո հրաշալի ծիտը:

Ինքը թերահավատ նայեց թռչնակին և պատասխանեց.

— Հրաշալի ծիտ չկա, բոլորն էլ սովորական են:

— Ո՞վ ասաց, որ չկա,—հարցրեց ծիտը:

— Հայրիկը...

Թռչնակը տխուր լռեց, գլուխն օրորեց և ասաց.

— Ես հեքիաթից եմ գալիս:

— Հեքիա՞թն էլ սուտ է:

— Հեքիաթը ճիշտ է, եթե հավատում ես,—ասաց թռչնակը և գլուխը կախեց:

Արմենը խղճաց նրան:

— Ես քեզ սիրում եմ, ծիտիկ ջան: Հեքիաթներն էլ եմ սիրում, Կարմիր Գլխարկին, Ձմեռ Պապին, Մոխրոտին...

Թռչնակն ասաց.

— Երգս երբեք չմոռանաս:

— Ո՞րն է այդ երգը:

Թռչնակը զարմացավ և հարցրեց.

— Դու չե՞ս լսել:

— Լսել եմ... ընը... դու ծի՛վ-ծի՛վ, ծի՛վ-ծի՛վ ես անում:

Թռչնակի աչքերը ուրախությունից փայլեցին:

— Եթե ուշադիր ականջ դնես, ավելին կլսես: Ես երգում եմ... ճի՛վ-ճի՛վ, ճի՛շ-ճի՛շ, ճի՛շտ-ճի՛շտ...

Եվ թռչնակը օդ բարձրացավ ու երգեց, այնպես երգեց, որ Արմենը լսեց և հասկացավ:

— Երեխաների համար ես ծիտ եմ, մեծերի համար ճիշտն եմ, ճշմարտությունը, ճի՜շտ, ճի՜շտ, ճի՜շտ...

Առավոտյան մայրիկն արթնացրեց Արմենին: Նա ցույց տվեց թափանցիկ ու փայլուն մի տոպրակ, որի մեջ քաղցրավենիք էր դրված:

— Գիտե՞ս ով է բերել... ծիտիկը:

Արմենը հավատաց մայրիկին, որովհետև հրաշալի ծիտը կա՛, թեկուզ նա միայն երազում լինի:

Մրցանակաբաշխության նյութերից




— Ի՜նչ ձանձրալի է այստեղ. ես չեմ կարող նույնիսկ խոսել, զվարճանալ իմ եղբայրների հետ, որովհետև աճում եմ թփի ամենավերջին ճյուղի վրա,— մենմենակ, տխուր մտածում էր մասուրներից մեկը։

Քամին մեղմ օրորում էր նրան, թռչունները երգում էին, արևը տաքացնում էր, և այդ ամենը հիանալի էր։

Բայց ահա մի անգամ կատաղի քամին քիչ մնաց պոկեր ոչ միայն այդ մասուրը, այլև ամբողջ թուփը։ Մասուրը շատ վախեցավ։ Քամուն հաջորդեց անձրևը։ Դա դուր եկավ նրան. լավ լողացավ և ջուր խմեց։

Գարնան մի պայծառ օր մասրենուն մոտեցավ մի մարդ։ Նրա ձեռքին կար արկղ։ Մասուրը սարսափեց. մի պահ նրան թվաց, թե այդ մարդը եկել է իրեն պոկելու։ Վշտից նույնիսկ գլուխը կախեց. էլ չի կարողանա քամու հետ խաղալ, արևի հետ ծիծաղել, լսել թռչունների երգերը։

Բայց ինչքա՜ն ուրախացավ մասուրը, երբ նկատեց, որ այդ անծանոթը եկել է ոչ թե իրեն պոկելու, այլ նկարելու։ Նա գոհ էր, որ այդ նկարիչը եկել է նկարելու իրեն և ո՛չ թե գոռոզ ծաղիկներին։

Մի առավոտ, երբ մասուրն աչքերը բացեց, նրա գլխավերևում կանգնած էր մի մեղու, որն իր փոքրիկ թաթիկներով քնքշորեն շոյում էր մասուրի թերթիկները։ Մեղուն ու մասուրը ծանոթացան և սկսեցին զրուցել։ Մեղուն պատմեց, թե ինչպես բլրի հետևում մի գայլ հոշոտել է երեք գառ։

— Իսկ գայլը այստեղ չի՞ գա,— վախենալով հարցրեց մասուրը։

— Ո՛չ, ո՛չ, մի՛ վախենա, նա այստեղ մտադրություն էլ չունի գալու. գայլերը ծաղիկներ չեն սիրում, նույնիսկ քեզ նման գեղեցիկներին։

Հաջորդ անգամ մեղուն իր հետ մեղր բերեց, որի հյութը վերցրել էր մասուրից։ Նա այնքան զգույշ էր վերցրել, որ մասուրը չէր էլ զգացել։ Մեղրը մասուրին շատ դուր եկավ, և նա խնդրեց մեղվին, որ ամեն օր իրենից հյութ վերցնի։ Թող մարդիկ ուտեն իրենից պատրաստված



մեղրը, առողջանան, կազդուրվեն։ Մասուրը հպարտացավ, որ ինքը միայն գեղեցիկ չէ, այլև օգուտ է տալիս մարդկանց։

Ամեն անգամ, երբ մեղուն գալիս էր մասուրի մոտ, սա ուրախանում էր, իսկ երբ մի քիչ ուշանում էր, վշտանում էր. կարծում էր, թե մեղուն մոռացել է իրեն։ Բայց մեղուն նրան չէր մոռանում, ամեն օր գալիս էր և հետաքրքիր նորություններ պատմում։

Մասուրը երջանիկ էր։

Բայց այդ երջանկությունը երկար չտևեց։ Մի անգամ մի խումբ աղջիկներ եկան և սկսեցին հավաքել մասրենու թփի վրայի պտուղները։ Քաղեցին նաև մեր մասուրը։ Նրանց լցրեցին մի պարկի մեջ, և մեր մասուրը խառնվեց ուրիշներին։ Նա տխրեց։ Մտածում էր մեղվի մասին, որին գուցե այլևս չտեսներ։ Նա սկսեց պատմել ընկերներին մեղվի մասին, մեղրի մասին։

Նրանց տարան գործարան։ Մեր մասուրը դարձավ հյութ, լցրեցին շիշը և դասավորեցին արկղի մեջ։ Շուտով հասան խանութ։

Եվ ահա շիշը գնեց մի կին, դրեց պայուսակի մեջ, որտեղ կային շատ շշեր՝ կաթի, մածնի, զանազան հյութերի։ Նա ուզեց իր նոր բարեկամներին էլ պատմել մեղվի մասին, երբ հանկարծ լսեց ծանոթ բզզոց... Դա իր սիրելի, մտերիմ ու հարազատ մեղուն էր։ Մեղուն վերջին անգամ տխուր հրաժեշտ տվեց և հեռացավ։ Նրա աչքերից արցունքներ էին հոսում։

Վերջապես մասուրի հյութով լցված շիշը հասավ տուն։ Անմիջապես շիշը բացեցին և հյութը լցրին գդալի մեջ։ Մի փոքրիկ երեխա բերանը բացեց ու մի շնչով կուլ տվեց։ Հյութը շատ դուր եկավ տղային։ Նա խնդրեց մորը, որ նորից տա։ Մասուրը հպարտացավ, որ իր կյանքի վերջին վայրկյաններին նորից օգուտ տվեց մարդկանց։

ՎԱՀՐԱՄ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ
*(Երևանի Շիրվանզադեի անվան դպրոցի 5-րդ «գ» դասարանի աշակերտ)*

Ն. ԶԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ԵՍ ՈՒ ՔԱՄԻՆ

ԷԴՈՒԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

Փաթիլն է մաղում,
Փաթիլն է խաղում,
Եվ օրորվում է քամու երգի տակ,
Մերկ են ծառերը,
Ճերմակ սարերը,
Լռել են վաղուց առու և գետակ։

Ճերմակ, ճիփ-ճերմակ
Մի անծայր վերմակ
Փռվել է դաշտին, հեռու բլրակին,
Լուռ է չորս բոլոր,
Ու մենակ, մոլոր
Քամին է շրջում ու սուլում կրկին։

Ուրախ ծիծաղով,
Երգով ու տաղով
Բարձր բլրակից սլանում եմ ցած,
Քամին է վազում,
Մրցել է ուզում,
Բայց ետ է մնում, ոռնում կայրացած։

Մրցում ենք, մրցում,
Նա ինձ հալածում,
Խփում է դեմքիս, գլխարկս տանում,
Բայց իմ «թշնամուց»,
Զայրացած քամուց
Առաջ եմ անցնում ու չեմ վախենում։

Փաթիլն է մաղում,
Փաթիլն է խաղում,
Պարտված քամին է ինձանից փախչում
Ուրախ ծիծաղով,
Երգով ու տաղով
Ես թևեր առած ներքև եմ թռչում։



# ԴՈՒ ԿՏԵՍՆԵՍ ԳՈՒՆԱՎՈՐ ԵՐԱԶՆԵՐ

ԱՐՏԱՇԵՍ ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ԿԱՐԱԳՅԱՆԻ

— Քանի՞ օրից հետո ես դպրոց գնալու:

Ամեն օր, երբ հանդիպում եմ Հրաչիկին, նա այս հարցն է տալիս: Որովհետև գիտեմ՝ նա կանգնում է իմ դռան առջև ու սպասում այնքան ժամանակ, մինչև ես դուրս գամ ու տամ այդ հարցը:

— Որ 303 անգամ քնեմ, հետո,— երջանկությունից փայլող դեմքով պատասխանում է Հրաչիկը:

Հետո հարցնում է ինչպես միշտ.

— Այդ շա՞տ է, թե՞ քիչ, քեռի՛ Սարո:

Քեռի Սարոն այդ ես եմ:

— Քիչ է, քիչ, Հրաչիկ,— ասում եմ ես:

Մենք նստում ենք թթենու ծառի տակ: Ես լրագիր եմ կարդում, իսկ Հրաչիկը տեղավորվում է ինձնից քիչ հեռու. նա մեր հարևանի տղան է, վեց տարեկան. կապույտ աչքեր ունի ու սև մազեր, այնքան սև, ինչ որ ձյութ: Ու շատ է սիրում հողի հետ խաղալ: Վերցնում է երկաթի մի կտոր ու սկսում է փորել հողը, հետո բլուր սարքում, մի փայտի կտոր էլ դնում է վրան ու ասում.

— Սա Մանկական երկաթուղին է:

— Չէ՛ մի, երկաթուղի, սրա երկաթուղուն նայիր,— լսվում է մի ծաղրական ձայն: Այդ արդեն Գուրգենն է: Մեր մյուս հարևանի տղան: Նա վերադարձել է դպրոցից, ճաշել ու դուրս է եկել խաղալու: Բայց պայուսակն էլ հետն է բերել: Ու ինչ ասես, որ չի լցրել. միայն թե ծանր լինի, միայն թե բոլորը տեսնեն, որ ինքը պայուսակ ունի և դպրոց է գնում:

— Ա՛յ թե երկաթուղի է, հա՜,— ծիծաղում է նա,— այս փայտի կտորն էլ երևի գնա՞ցքն է:

— Գնացքն է,— լրջորեն պատասխանում է Հրաչիկը:

— Բա ինչու՞ չի գնում, հը՞,— ծիծաղում է Գուրգենը:

— Կգնա,— ասում է Հրաչիկը,— ճամփան դեռ չեմ սարքել:

Ու մատով փայտի տակից հեռացնում է հողը, այնքան, որ փայտը սահում է ցած:

— Տեսա՞ր,— ժպտում է Հրաչիկը ու հետո էլ փնչում է շոգեքարշի պես,— փո՛ւհ-փո՛ւհ, փո՛ւհ-փո՛ւհ...

— Իսկ երեխանե՞րն ուր են,— բարկանում է Գուրգենը,— դե ասա՛:

— Գնացքի մեջ են,— «փո՛ւհ-փո՛ւհ»-ի արանքից նետում է Հրաչիկը: Հետո հանկարծ սուլում է,— հեու՜ու, դուրս եկեք գծերից, գնացքը գալիս է...

— Գնացքի մեջ են,— Գուրգենը չարությունից պայուսակը նետում է հողին ու տրորում է բլուրը, մի կողմ է նետում փայտի կտորը,— ահա՛, սա է քո գնացքը, սա էլ քո երեխաները:

— Ինչու՞,— Հրաչիկը հրում է Գուրգենին,— ինչու՞ ես տրորում, հը՞,— նա վշտանում է սաստիկ,— ինչո՞ւ քանդեցիր երկաթուղիս...

— Մի՛ խանգարիր, Գուրգեն,— սաստում եմ ես,— թող խաղա իր համար:

— Ախր փչում է, է՜, քեռի Սարո,— բավարարված է, որ քանդել է Հրաչիկի կառուցածը:—

Դուք էլ էիք տեսնում, բա էնտեղ երկաթուղի կա՞ր։

— Գուցե ես ու դու չենք տեսնում, բայց ինքը տեսնում է,— ասում եմ ես։

— Դե, իհարկե, տեսնում եմ,— մրմնջում է Հրաչիկը և հանկարծ ժպտում է արցունքների միջից,— դե, ոչինչ, հիմա ես տնակ կսարքեմ ու ծառեր կտնկեմ շուրջը։

Չգիտես որտեղից եղևնու մի ճյուղ է գտնում, գալիս, նստում է հողաթմբին, ճղից մի քառակուսի բան է պատրաստում ու եղևնու ասեղները հերթով տնկում է քառակուսու շուրջը։

— Սա խնձորի այգին է,— ասում է նա, ու դեմքը փայլում է հրճվանքից։— Երեխաները դուրս են գալիս տնակից ու մտնում են այգի,— նա ինչ-որ երկու չոփ տնակի մոտից բերում է ու կանգնեցնում կանաչ ասեղների մոտ։

«Սաթիկ, խնձոր եմ ուզում»։

«Դե լավ, Գոհար, ես հիմա աստիճան կբերեմ, կբարձրանամ ու քեզ համար խնձոր կքաղեմ»։

«Երեխաներ, ծառ բարձրանալ չի կարելի, դուք դեռ փոքր եք»։

«Մայրիկ, Գոհարը խնձոր է ուզում»։

«Եկեք տուն, ես կտամ»։

Ու չոփերը արագ շարժվում են դեպի քառակուսին։

Պարզ է, չէ՞ որ Սաթիկի, Գոհարի և մայրիկի փոխարեն միայն Հրաչիկն է խոսում, բայց նա այնպիսի տարբեր ձայներով է խոսում, որ ես հազիվ եմ ծիծաղս զսպում։

Իսկ Գուրգենը կրկին բարկանում է.

— Տես, ինչ է փչում, այս չոփի կտո՞րն է Գոհարը։

— Չէ, դա Սաթիկն է,— ասում է Հրաչիկը։

— Դա էլ ես տեսնում, չէ՞,— ավելի է չարանում Գուրգենը։

— Տեսնում եմ,— կամացուկ ասում է Հրաչիկը ու ձեռքերով պաշտպանում իր տնակը. վախենում է, որ Գուրգենը կրկին կքանդի։

Հետո հանկարծ բարձրացնում է գլուխը, ինչ-որ շատ հաճելի մի բան է հիշում ու ժպտում կապույտ աչքերով, այնքան կապույտ, ասես ներկված լինեն։

— Իսկ ես այս գիշեր այնքան լավ երազ եմ տեսել... հիշեցի։

— Դու՞,— Գուրգենը չի հավատում ու քմծիծաղ է տալիս,— երա՜զ...

— Տեսել եմ,— երազկոտ հայացքով ասում է Հրաչիկը, այնքա՜ն սիրուն էր...

— Ես դպրոց եմ գնում, երազ չեմ տեսնում, իսկ դու տեսնո՞ւմ ես,— ընդհատում է նրան Գուրգենը։

— Տեսնում եմ,— երդվում է Հրաչիկը...

— Դե, ասա՛, ի՞նչ ես տեսել,— Գուրգենը ասում է այնպիսի ձայնով, որ նշանակում է. «Միևնույն է, չեմ հավատում, բայց որ շատ ես ուզում՝ պատմիր»։

Ու Հրաչիկը պատմում է, այնպես է պատմում, որ կարծես հիմա էլ տեսնում է. աչքերը կիսախուփ են, իսկ դեմքը հուզված է ու պայծառ։

...— Հայրիկիս հետ գնացել էինք Մանկական այգի։ Շատ երեխաներ կային։ Հայրիկս ինձ տարավ անիվի մոտ։ Ախր հայրիկս գիտի, որ ես ամենից շատ անիվ եմ սիրում։ Անիվի տնակների մեջ այնքա՜ն երեխաներ կային։ Տեղ չկար։ Ու բոլորը երգում էին...

— Ի՞նչ էին երգում,— արագ հարցնում է Գուրգենը։

Հրաչիկը շփոթվում է։

— Ի՞նչ, ապաաիր... չեմ հիշում,— տխուր մրմնջում է նա։

— Տեսա՞ր,— չարախնդում է Գուրգենը,— տեսա՞ր, որ փչում ես։ Դու ոչ մի երազ էլ չես տեսել։

— Տեսել եմ,— Հրաչիկը քիչ է մնում լաց լինի,— տեսել եմ։ Ես էլ երգում էի բոլորի հետ։

— Էլի սկսեցիր, ազգա՛ն,— միջամտում է Գուրգենը,— լա՛վ, փչի՛ր։

Ու միանգամից պայծառանում է Հրաչիկը, աչքերը նորից կիսախուփ են, երազկոտ։

...— Հետո մենք մոտեցանք դրամարկղին։ Ու մեկ էլ ի՞նչ տեսնեմ՝ տոմսավաճառ մորաքրոջ փոխարեն նստել է մի գեներալ։

— Գեներա՞լ,— Գուրգենը փռթկում է։

— Գեներալ,— կրկնում է Հրաչիկը,— նայում է ինձ, ծիծաղում է ու հարցնում. «Ուզու՞մ ես թռչել»։ Ես էլ եմ ծիծաղում ու գլխով եմ անում։ Հետո հայրիկս ինձ նստեցնում է անիվի մի տնակի մեջ ու փակում է դուռը։ Մեկ էլ տեսնեմ՝ հայրիկս փոքրիկ-փոքրիկ է, ու մեկ էլ տեսնեմ՝ ինձ կապել են տնակին։ Չեմ կարողանում շարժվել։ Նայում եմ ներքև։ Ու բոլորը փոքր են, տները ինչ որ խորանարդիկներ՝ ա՛յ, այսքան։ Հետո տեսա, որ իսկի էլ անիվի մեջ չեմ, այլ՝ ինքնաթիռի։ Բայց չվախեցա։ Ես էի քշում։ Այնքան հեշտ էր։ Ես մենակ ես չէի, ուրիշներն էլ ինքնա-



թեռներ էին բռնում։ Գույնզգույն, կարմիր, կանաչ, կապույտ թիթեռնիկներ...

— Անա՛, բռնվեցիր, սուտ ես ասում,— բացականչեց Գուրգենը,— մեր դասատուն ասել է, որ գունավոր երազներ չեն լինում։

Հրաչիկը կրկին շփոթվեց.

— Ախր ես տեսել եմ,— անվճռական ասաց նա,— կարմիր, դեղին...

— Սուտ ես ասում,— չարացած բղավեց Գուրգենը,— մեր դասատու՞ն գիտի, թե՞ դու։ Բոլորն էլ սո՛ւտ ես ասում, դու երազ չե՛ս տեսել, ինքնաթիռ չե՛ս նստել...

— Տեսե՛լ եմ,— Հրաչիկը ուռցրեց շրթունքները։ Հիմա ուր որ է՝ լաց կլինի,— տեսել եմ... գույնզգույն թիթեռնիկներ...



— Իսկ սա տեսե՞լ ես,— Գուրգենը պայուսակը խլեց Հրաչիկի ձեռքից ու վազեց դեպի իրենց տունը։ Կանգ առավ շեմքին, ետ նայեց ու գոռաց չարությամբ,— դու երազ չե՛ս տեսել, փըչա՛ն...

Հրաչիկը հառաչեց, ոչինչ չասաց, վերցրեց երկաթի կտորը ու նորից սկսեց փորել հողը։ Կարծեցի լաց է լինում, նայեցի, ուզեցի խոսել հետը։ Բայց՝ չէ, մոռացել էր արդեն, կամացուկ խոսում էր ինքն իրեն, հետո ինչ-որ տեղից գըտավ պահածոյի մի թիթեղյա տուփ, ծորակից ջուր բերեց ու թափեց հողի վրա։ Ջուրը նրա փորած փոքրիկ անցքից ներս լցվեց ու դուրս եկավ մեծ բացվածքով։ Հրաչիկը հրճվանքով ծիծաղեց, նայեց շուրջը ու հանկարծ դարձավ ինձ.

— Տեսա՞ր։

— Ի՞նչը,— հարցրեցի ես։

— Էլեկտրակայանը,— ծիծաղեց Հրաչիկը։

— Իհարկե, տեսա։ Հիանալի՛ է, հրաշալի՛ է։

Հրաչիկը նայեց ինձ։ Մտածեց, որ ծաղրում եմ։ Երկար նայեց, բայց ես չէի ծաղրում, չէի կատակում։ Երբ զգաց այդ, հավատաց ու ժպտաց անկեղծ, ուրախ. աչքերը մի տեսակ դարձան երկնագույն։

— Որ մեծանամ, իսկական էլեկտրակայան կըսարքեմ ու կտամ քեզ,— ասաց նա։

— Շատ լավ, Հրաչի՛կ,— ասացի ես։

Լռեց։ Սկսեց մտածել։ Հետո մոտեցավ ինձ, նայեց շուրջն ու շշուկով հարցրեց.

— Քեռի՛ Սարո, բա գույնզգույն երազներ չե՞ն լինում։

Նա նայում էր ինձ հարցական, սպասող, հավատացող աչքերով։

— Դե իհարկե, լինում են,— ասացի ես,— ինչու՞ չպետք է լինեն։

— Բա Գուրգենը...

— Գուրգենը ճիշտ չի ասում,— պնդեցի ես, մի տեսակ զայրույթով լցվելով Գուրգենի նկատմամբ։

Նա խոր շունչ քաշեց։ Լռեց։ Ցուցամատը բերանը տարավ ու նորից կկոցեց աչքերը։ Հետո արագ հարցրեց հազիվ լսելի ձայնով.

— Իսկ ես կտեսնե՞մ։

— Ի՞նչը։

— Գույնզգույն երազներ,— նրա ձայնը դողաց։

— Դե իհարկե, կտեսնես,— ասացի ես,— դու ամեն ինչ կտեսնես, Հրաչի՛կ։ Դու կտեսնես գունավոր երազներ...

## ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ ՅԱՄԱՅԿԱՅՈՒՄ

1692 թվականի հունիսի 7-ին, 11-ն անց 43 րոպեին երկրաշարժը ավերեց ծովահենների և ստրկավաճառների մայրաքաղաքը՝ Պորտ-Ռոյալը (Յամայկա):

Ինչպե՞ս հաջողվեց ճշգրիտ որոշել երկրաշարժի սկիզբը:

Գիտնականներին օգնեց մի սովորական ժամացույց, որը պատրաստված է եղել երկրաշարժից վեց տարի առաջ:

Ժամացույցը գտնվեց ծովի հատակի տիղմի մեջ: Անհետացել էին միայն պողպատե սլաքները: Ժամացույցը առանց ապակու էր: Թվացույցի վրա նստել էր երկրաշարժից առաջացած կրափոշին: Ժամանակի ընթացքում ժանգը կերել էր սլաքները, բայց նրանց հետքը մնացել էր կրային շերտի վրա: Գիտնականները ռենտգենյան ճառագայթների օգնությամբ կարողացան պարզել նրանց ճիշտ դիրքը և որոշել երկրաշարժի սկիզբը:

## ՊԱՐԾԵՆԿՈՏ ՃՈՒՏԸ

ՀՈՎՀ. ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Ճուտը վազեց առվակի մոտ,
Տեսավ ափին նստած մի գորտ:
Հենց որ գորտը ճտին տեսավ,
Սարսափահար ջուրը մտավ:
Նայեց ճուտը ու հռհռաց,
Դարձավ մորը այսպես ասաց.

—Տեսա՞ր, մայրիկ. քո քաջ ճտին,
Ո՜նց փախցրեց վախկոտ գորտին:
Գորտը կռաց,
Նրան ասաց.
—Թե որ քաջ ես, մտիր ջուրը,
Նո՛ր հաղորդիր քո սուտ լուրը:

Նկ. ՆՈՐԱ ՀՈՎՍԵՓՅԱՆԻ

# ԱՐԱԳԱԾԻ ԼԱՆՋԵՐԻՆ

Ռ. ՄԵԼԻՔ-ՍԱՀԱԿՅԱՆ

Նկ. ՏԻԳՐԱՆ ԱՐԾՐՈՒՆՅԱՆԻ

Աշոտը գտնում էր, որ ես երկու հիմնական թերություն ունեմ. նախ կռվարար չեմ, իսկ երկրորդը՝ գերազանցիկ եմ: Դրանից նա՝ չգիտես ինչու, եզրակացնում էր, որ ես երկչոտ եմ: Բայց քաջությունը կռվարարության մեջ չէ: Օրինակ՝ Միքայելը շատ քաղաքավարի մարդ է, բայց գիտության համար քիչ էր մնում կյանքը զոհեր: Ես չեմ ասում, որ Միքայելի նման քաջ եմ, բայց կենդանաբանական այգում կատարվածից հետո ոչ ոք չի ասի, որ երկչոտ եմ, անգամ Աշոտը: Հիմա բոլորը հավատում են, որ ես թունավոր օձեր եմ բռնել, որովհետև Միքայելը հաստատեց իմ պատմածը: Թե չէ Աշոտը միշտ ընդհատում էր՝ ասելով. «Կամաց փչի, պատերը կփլվեն»: Պարզ է, Միքայելին նա այդպես չէր պատասխանի, որովհետև Միքայելը շուտով ավարտելու է համալսարանը: Նրա դիպլոմային աշխատանքը նվիրված է հայկական թունավոր իժի խայթվածքի դեմ հակաթույն գտնելու հարցին: Դա շատ կարևոր գործ է: Միքայելն ասում է, որ Հայաստանում տարեկան քառասունից-հիսուն մարդ ենթարկվում են օձերի խայթումներին, որոնցից մի քանիսը մահանում են: Այդ գործի, մեկ էլ կենդանաբանական այգին հարստացնելու համար Միքայելին բազմաթիվ օձեր էին անհրաժեշտ: Եվ ահա ամառը ես ու Միքայելը բարձրացանք Արագած՝ օձեր որսալու: Դրանից առաջ ես սոսկալի վախենում ու զզվում էի օձերից: Բայց Միքայելը ասաց, որ դա կանցնի: Եվ իրոք անցավ:

Մենք գյուղից դուրս եկանք վաղ առավոտյան ու սկզբից հանդիպեցինք ոչ թե օձի, այլ լորտուի: Երբ ես Միքայելի ձեռքի մեջ տեսա կես մետրի չափ դեղնավուն գալարվող այդ սողունին, ուղղակի ցնցվեցի գարշանքից ու վախից, կարծելով, որ դա թունավոր օձ է. բայց Միքայելն ասաց, որ հակառակը՝ դա օձերի թշնամին է: Նա ուժեղ ծնոտներ ունի և ուղղակի կրծում է օձերին, իսկ մարդու համար բոլորովին անվտանգ է:

Հետո առաջարկեց ինձ վերցնել լորտուին: Սկզբում ես կտրուկ հրաժարվեցի, սակայն Միքայելն այնքան համոզեց, որ ի վերջո համաձայնվեցի: Բայց ամենասանսպասելին այն էր, որ երբ ես զգացի ձեռքիս մեջ լորտուի կոշտ, ասես զրահապատած

մարմինը, իմ զզվանքը անհետացավ: Ես շատ ուրախացա, անգամ հպարտացա իմ համարձակությամբ: Այն ժամանակ Միքայելն ասաց, որ հաղթական ցնծությունն անտեղի է, որովհետև դա մողեսի մի տեսակն է, որի նախնիքը հետզհետե կորցրել են իրենց ոտքերը և նմանվել օձերին: Երանի օձ լիներ...

Հետո մենք բաց թողեցինք լորտուին: Միքայելն ասաց, որ պետք է շտապել, երբ արևը ուժեղ տաքացնի, օձերն ավելի արագաշարժ կդառնան, ու նրանց բռնելը դժվար և վտանգավոր կլինի: Դա նրանից է, որ նրանք սառնարյուն կենդանիներ են:

Մենք ուղևորվեցինք դեպի «Օձի կոնդ» կոչված բլուրը:

Ճանապարհին Միքայելը չափազանց հետաքրքիր բաներ պատմեց օձերի մասին: Նախ նա ասաց, որ Հայաստանում քսաներկու տեսակի օձեր կան, որոնցից միայն չորսն են թունավոր: Իսկ թունավորներից էլ միայն երկուսն են մահացու՝ գյուրզան և հայկական իժը: Բայց ամենից շատ Միքայելը փափագում էր կատվաօձ բռնել, որը հազվագյուտ է հանդիպում:

Մի անգամ նրան գյուրզան է կծել: Տասներկու օր նա կյանքի ու մահվան մեջ է գտնվել, և առողջացել է սրսկված շիճուկի շնորհիվ:

— Եթե հայկական իժը կծած լիներ, բանս բուրդ էր, — ասաց նա ժպտալով:

Երբ արդեն մոտեցել էինք «Օձի կոնդի» ստորոտին, Միքայելը հանկարծ կռացավ և համարյա ոտքերիս տակից, ուղղակի ձեռքով խլեց մի երկար օձ: Անպիտանն այնպես էր հարմարվել շրջապատին, որ ես բոլորովին չէի նկատել նրան: Դրանից հետո ավելի ուշադիր էի նայում շուրջս: Միքայելը տեսնելով դեմքիս արտահայտությունը՝ ծիծաղեց՝

— Մի՛ վախիր, թունավոր չէ:

Հետո նա օձը աջ ձեռքում պահած սկսեց բացատրել, թե ինչպես կարելի է տարբերել թունավոր օձին ոչ թունավորից: Տարօրինակ բան՝ օձը բոլորովին չէր փորձում խայթել նրա ձեռքը:

— Օձը չի կծի այն ձեռքը, որը նրան օդի մեջ է պահում, — ասաց Միքայելը, — նա կարծում է, որ դա ծառի ճյուղ է կամ հենարան: Ուրիշ բան, եթե ես մոտեցնեմ մյուս ձեռքս...

Ու հանկարծ... Ուզում եք հավատացեք, ուզում եք՝ ոչ. Միքայելը իր ասածը ապացուցելու համար մոտեցրեց ձախ ձեռքը և թույլ տվեց, որ օձը, լայն բացելով իր մեծ բերանը, խայթի նրա ձեռքը: Բայց Միքայելը հանգստացրեց ինձ և ցույց տվեց խայթվածքը՝ փոքրիկ ծակեր ատամներից ու մի կաթիլ արյուն:

— Ահա և ամենը, — ժպտաց նա:

Երբ ես ուշքի եկա, հարցրի Միքայելին, թե ինչու այդպիսի խելոք կենդանին, ինչպիսին օձն է, ձեռքը ճյուղից չի տարբերում:

— Օձի խելքի մասին եղած բոլոր պատմություններն ու հրաշքները պարզապես հեքիաթներ են, — ասաց Միքայելը, — դրանք տգիտության և վախեցած երևակայության ծնունդ են. իր զարգացման աստիճանով օձը շատ և շատ կենդանիներից ցածր է գտնվում...

Միքայելի խոսքը կիսատ մնաց, որովհետև հենց այդ պահին ես տեսա... հայկական իժին: Այո, առաջինը ես տեսա և անմիջապես ճանաչեցի, չէ՞ որ Միքայելը պատմել էր նրա մասին: Շատ ուրախացա ու միաժամանակ վախեցա, շունչս պահած քաշեցի Միքայելի փեշից և հայացքով ցույց տվի:

— Կեցցե՛ս, — շշնջաց Միքայելը և օձերի համար հատկացված տոպրակը ինձ հանձնելով, շարժվեց դեպի իժը: Նա տաքանում էր քարի վրա, զարդարված էր սև ու դեղին փայլուն բծերով և ուներ յոթանասունից — ութսուն սմ երկարություն:

Երբ Միքայելը մոտեցավ, օձը փորձեց փախչել, բայց այնքան դանդաղ էր շարժվում, ասես հիվանդ լիներ: Հա, մոռացա ասել, որ Միքայելը իր հետ մի երկճղիկ փայտիկ էր վերցրել, որը շատ նման էր ճեղապարսատիկի: Այդ երկու ծայրերի միջև բարակ կաշի էր քաշած: Միքայելը հետևից հասավ օձին ու ճարպկորեն սեղմեց նրան այդ փայտիկով այնպես, որ կաշվե ժապավենը սեղմեց օձի վիզը, հենց գլխի մոտ:

— Մո՛տ արի, — կանչեց Միքայելը՝ շարունակելով սեղմել օձին:

Ես մոտեցա: Միքայելը հանեց իր ծղոտե գլխարկը և մոտեցրեց օձի բերանին: Օձի բերանից մի բարակ երկծայր թելիկ դուրս նետվեց, և գլխարկի վրա մի փոքրիկ դեղին կաթիլ մնաց:

— Ահա այս մի կաթիլն էլ բավական է, որ մարդը թույնից մահանա, — ասաց Միքայելը:

Ահա թե ինչպիսի խորամանկությամբ Միքայելը ստիպեց օձին պարպել իր թույնի պաշարը:

— Թույնի լրիվ պաշար կուտակելու համար նրան առնվազն տասից — քսան րոպե կպահանջվի, — ասաց Միքայելը, — իսկ այդ ժամանակամիջոցում մենք նրան կտեղավորենք տոպրակի մեջ: Եվ



եթե նա համարձակվի կծել, ապա թույնի բաժինը դեռևս մահացու չի լինի,—զվարթ վերջացրեց նա ու միաժամանակ զգույշ երկու մատով բռնելով օձի գլխից, թափով իջեցրեց տոպրակի մեջ և արագ ձգեց տոպրակի բերանը: Այժմ տոպրակի մեջ երկու օձ կար:

— Իսկ նրանք միմյանց չե՞ն սպանի,—անհանգստացա ես:



— Ո՛չ, օձը պետք է տեսնի, թե ինչ է կծում: Մթության մեջ չի խայթի:

Այդ օրը մենք տասներկու օձ բռնեցինք, որոնցից յոթը հայկական իժեր էին: Արևն արդեն այրում էր, և օձերը շատ արագաշարժ էին դարձել: Ես Միքայելից մի տասը քայլ հեռու օձեր էի փնտրում, երբ լսեցի նրա ուրախ բացականչությունը՝

— Բռնվեցի՛ր, սիրելի՛ս...

Ես մոտ վազեցի. Միքայելը չոքել էր մի մեծ քարի մոտ և աջ ձեռքով սեղմում էր ինչ-որ օձի պոչ, որի գլուխը քարի տակ էր: Հետո նա ձախ ձեռքը մտցրեց քարի տակ, որ գլխի մոտից բռնի, երբ հանկարծ ճչաց. օձը խայթեց նրա ձեռքը, բայց նա օձին ձեռքից բաց չթողեց, այլ արագորեն տեղավորեց տոպրակի մեջ: Ապա սկսեց արագ ծծել խայթվածքը ու թքել: Իսկ հետո նա հանեց սրիչը ու խաչաձև կտրեց վերքը, որ արյունը ազատ դուրս հոսի, պարանի կտորով պինդ ձգեց ընթադաստակը ու դեռ ինձ էլ կանչեց օգնության: Պարզվեց, որ դա հենց այն կատվաօձն է, որի մասին երազում էր Միքայելը: Ինքը կատվաօձը վտանգավոր չէ, սակայն քարի տակ կար թունավոր օձ, որը և խայթեց Միքայելին: Ես սաստիկ անհանգստացա, իսկ Միքայելը ժպտաց ու ասաց, որ առանձնապես մեծ վտանգ չկա, քանի որ վերքը երակից հեռու է, և նա համարյա ամբողջ թույնը դուրս է ծծել, այնպես որ հազիվ մի քանի օր պառկի: Նա գրպանից հանեց սրսկիչը ու վերքի շուրջը երկուսից—երեք տեղ սրսկեց կալիումպերմանգանատ, որը քայքայում է թույնը: Հետո նա ասաց, որ պետք է շտապել գյուղ, քանի դեռ ինքը չի թուլացել, նախօրոք բացատրեց, թե ինչ կպատահի հետը և ինձ հանձնեց օձերով լի տոպրակը: Օձերը անընդհատ գալարվում էին մեջքիս վրա, և դրանից մարմնովս սարսուռ էր անցնում: Հետո դա էլ անցավ: Միքայելը սաստիկ դեղնել էր ու թուլացել: Ձեռքը մի կես ժամում ձմերուկի չափ ուռեց: Երբ հասանք գյուղ, նա հազիվ էր շարժվում: Բայց դեռ մեկ-մեկ փորձում էր ժպտալ՝ ինձ հանգստացնելու համար: Նա ասաց, որ ես իսկական ընկեր ու քաջ եմ, և որ նա ինձ անպայման օձի տապակած մսով կհյուրասիրի: Կարծեցի կատակում է, սակայն հետո պարզվեց, որ օձի միսը շատ համեղ է, ասես իշխան ձուկ լինի: Հետո նրան մեքենայով շրջանային հիվանդանոց հասցրին: Ես էլ գնացի, որպեսզի նրա հագուստը ետ բերեմ:

Երեք օր անց, երբ ես այցելեցի նրան, ձեռքը դեռ բավականաչափ ուռած էր: Բայց այլևս չուզեց մնալ հիվանդանոցում:

— Ձեղավ, կոլեգա,—դիմեց նա ինձ,—օրերը գընում են, իսկ մենք անգյալություն ենք անում: Վաղը սեր այնտե՛ղ,—և նա առողջ ձեռքի մատը ուղղեց Արագածի կողմը:

Ահա և ամենը: Այսինքն ոչ. ես չպատմեցի, թե ինչ պատահեց կենդանաբանական այգում: Դա էլ ուրիշ անգամ:

Հա, մի բան էլ ասեմ: Առաջ ես կարծում էի, թե ամենաարժանի գիտությունը ֆիզիկան է՝ բարդ մեքենաներ, ռադիոսարքեր, տիեզերական թռիչքներ... Բայց Միքայելը ուղղակի ջախջախեց իմ համոզմունքը:

— Անգամ ամենապարզ, ամենացածր զարգացած կենդանի օրգանիզմը հազար անգամ ավելի բարդ է, քան քո ամենաբարդ մեքենան.—ասաց նա:— Ո՞ր մեքենան է առանց մարդու յուղ գնում կամ իր նմանը ստեղծում: Անհասկանալի մեքենա չկա, քանի որ բոլոր մեքենաները մարդիկ են ստեղծել, իսկ ամենաչնչին միջատի գործունեության մեջ դեռ շատ ու շատ անհասկանալի բաներ կան, էլ ու՞ր մնաց մարդու ուղեղի աշխատանքը:

Ինչ վերաբերում է տիեզերական թռիչքներին, ապա այնտեղ էլ առանց կենսաբանի յոլա չեն գնա։ Եվ հետո, ինչպես դու ինքդ համոզվեցիր, օձ բռնելը պակաս վտանգավոր չէ, քան Լուսին թռչելը։

Այժմ ուղղակի չգիտեմ, թե ուր գնամ, ինչ դառնամ՝ ֆիզիկո՞ս, թե՞ կենսաբան։

# Ո՛Չ, ՕՁԵՐԸ ՀԻՊՆՈՍԵԼ ՉԵՆ ԿԱՐՈՂ

*Ասում են, թե օձերը հիպնոսելու հատկություն ունեն։ Իբր թե վիշապ օձը նույնիսկ կարողանում է հիպնոսել, և գազաններն անգամ անշարժանում են նրա առաջ։ Պատանի բնասերներից շատերը նույնիսկ նկատել են, թե ինչպես հիպնոսված գորտը ուղղակի թռչում է լորտուի երախը։*

*Իսկ ինչպե՞ս է իրականում։ Օձերն իրո՞ք հիպնոսի հատկություն ունեն, թե՞ այդ կարգի բոլոր խոսակցությունները միայն հիվանդ երևակայության արդյունք են։ Կարո՞ղ են նրանք իրենց զոհերի վրա այնպես ազդել, որ վերջիններս կամավոր գնան, ընկնեն օձերի ու լորտուների երախը։*

*Ո՛չ, օձերը հիպնոսի ուժ չունեն։ Նրանք չեն կարող ստիպել իրենց զոհերին՝ փոխելու իրենց ուղղությունը՝ կամավոր գերության հանձնվելու համար։*

*Իսկ ինչո՞վ բացատրել այդ դեպքում պատանի բնասերների տեսածը կամ այն բոլոր մարդկանց վկայությունը, թե տեսել են նման երևույթներ։ Գուցե նրանք բոլորն էլ սխալվե՞լ են։*



*Բանից պարզվում է, որ ո՛չ։ Շատերն են տեսել, թե ինչպես է գորտը քարացել լորտուի առաջ և կախարդվածի նման ուղղակի նետվել նրա երախը։ Իսկ ինչպե՞ս է լինում այդ։*

*Ամեն ոք, ով հետևել է օձերին ու լորտուներին, նկատած կլինի, որ նրանք հաճախ են դուրս հանում իրենց բավական երկար, երկճյուղ լեզուն։ Օձերը նման դեպքերում այնպես արագ են շարժում իրենց լեզուն, կարծես թե ուզում են շոշափել այն տարածությունը, որտեղից պիտի անցնեն։ Օձերի լեզուն շոշափելիքի և մարմնի ջերմաստիճանը կարգավորելու օրգան է։ Շրջապատի ջերմությունն ինչքան ցածր լինի, օձը լեզուն այնքան քիչ դուրս կհանի։*

*Մյուս կողմից, գորտի ուշադրությունը գրավում են շարժվող առարկաները, մանավանդ երբ նա քաղցած է։ Գորտը շարժվող առարկաները բռնելու բնածին, ոչ պայմանական ռեֆլեքս ունի։ Այս բանը հայտնի է ամեն մի բնասերի, հատկապես ձկնորսությամբ զբաղվողներին։ Գորտերը հաճախ նետվում են նույնիսկ ձկնորսական կարթի խցանի վրա։*

*Գորտի ուշադրությունը գրավում է լորտուի անընդհատ շարժվող լեզուն, և նրանք, իհարկե, ոչ բոլորը կարող են թռչել լորտուին ընդառաջ և վերջինիս կմնա միայն բերանը բաց անել։*

*Ուրիշ կերպ են վարվում դոդոշները։ Նրանք լորտու տեսնելիս հարձակողական դիրք են ընդունում։ Գորտը այս կարգի պաշտպանության երբեք չի դիմում և լորտուի հետ միևնույն արկղում լինելով՝ սովորաբար նա անհանգստության կամ «սահի» ոչ մի նշան ցույց չի տալիս։*

*Թռչունները և մանր կաթնասունները նույնպես վիշապ տեսնելիս որևէ անհանգստություն ցույց չեն տալիս։ Փորձի համար հատուկ արկղի մեջ խոշոր պիթոնի մոտ արջամուկ են նետել։ Պիթոնը քաղցած է եղել և արջամկանը միանգամից բերանն է առել, սակայն վերջինս ուժեղ մի շարժումով դուրս է պրծել և նստելով պիթոնի դիմաց, հանգիստ սկսել է հարդարել մազերը։ Արջամուկը ևս «սահի» և անհանգստության ոչ մի նշան ցույց չի տվել։*

*Այս կարգի բազմաթիվ փորձերի միջոցով ապացուցվել է, որ օձերը հիպնոսելու ոչ մի ընդունակություն չունեն։*

ՀԱՐՑՐՈՒ՝ ԿՊԱՏԱՍԽԱՆԵՆՔ

**Սիրելի խմբագրություն, ես ուզում եմ իմանալ, թե ինչ բան է բնության հուշարձանը, ինչո՞վ է տարբերվում պատմական հուշարձանից և բնության ի՞նչ հուշարձաններ կան Հայաստանում։ Խնդրում եմ տպագրեք այդ մասին։**

ՍԻՐԱՆՈՒՇ ԳԵՎՈՐԳՅԱՆ

(Երևանի Շիրվանզադեի դպրոցի 7-րդ դաս. աշակերտուհի)

# ԲՆՈՒԹՅԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Հայրենի բնության ճանաչումը հայրենասիրության չափանիշներից մեկն է։ Սակայն իմ նպատակն է ոչ թե խոսել հայրենի բնության, այլ բնության հուշարձանների մասին։ Պետք է գիտենալ, որ պատմական հուշարձանները կերտվել են մարդու ձեռքով։ Դրանք ունեն իրենց պատմությունը, կառուցման տարեթվերը, հեղինակները։ Այդ հուշարձանների մասին հիշատակություններ կան մեր հին մատենագիրների գրվածքներում։ Պատմական հոյակապ հուշարձաններ են Զվարթնոցը, Էջմիածինը, Անին, Ախթամարը, Գառնին, Տաթևի, Բջնիի եկեղեցիները, բազմաթիվ խաչքարերը և այլն։

Այդպես չեն բնության հուշարձանները։ Դրանք կերտել է բնությունը, առանց մարդու մասնակցության։ Երկրաբանության պատմության անհայտության մեջ են թաղված բնության հուշարձանների առաջացման, կազմավորման և վերջնական ձևավորման տարեթվերը։ Այդ հուշարձանները կերտվել են մարդկային մշակույթի պատմությունից դարեր առաջ՝ օվկիանոսի ջրերից ազատված ցամաքամասերի կազմվելու երկարատև պրոցեսում։

Աշխարհում բազմաթիվ են բնության հրաշալի հուշարձանները, որոնք մեծ հետաքրքրություն են ներկայացնում բնասերների և ճանապարհորդների համար։ Դրանցից առանձնապես նշանավոր են Նիագարայի ջրվեժը, Լուրեի քարայրը՝ իր սրահներով, Կալիֆորնիայի 6000-ամյա սոճիները, Բոստոնի 2000-ամյա կաղնիները (ԱՄՆ), Բավիա քաղաքի (Իտալիա) նոճին, որ Հուլիոս Կեսարի ժամանակակիցն է եղել, Ղրիմում մինչև վերջերս եղած ընկուզենին, որը տարեկան տալիս էր 100 հազար հատ ընկույզ։

Սովետական Հայաստանը թեև փոքր երկիր է, սակայն հարուստ է իր ընդերքով, բուսական ու կենդանական աշխարհի հազվագյուտ տեսակներով, որոնք հանդիսանում են մեր երկրի բնության հուշարձանները։

## ՍԱՏԱՆԱՅԻ ԿԱՄՈՒՐՋԸ

Եղե՞լ եք Զանգեզուրում։ Դա մի չքնաղ լեռնաշխարհ է, որ հարուստ է բնության հուշարձաններով։ Այդտեղ հայտնի է Որոտան գետի վրա ընկած մի բնական կամուրջ, որ ժողովուրդն անվանել է Սատանայի կամուրջ։

Որոտանն անցնում է Հալիձորի գեղատեսիլ ձորով, իսկ Տաթևի մոտ հոսում է մի բնական անցքով, որի վրա գոյացել է Սատանայի կամուրջը։ Սատանայի կամուրջի մոտ մարդու սիրտը լցվում է սարսուռով։ Դեմդ անդնդախոր ձորն է, որի միջով սրընթաց դեպի քեզ է գալիս փրփրաբաշ գետը։ Գալիս է և կանգնած տեղումդ հանկարծ անհետանում։ Դա 200 քայլ երկարությամբ և 30 քայլ լայնությամբ մի կրային հողածածկ կամուրջ է, որի տակով շռնդալից անցնում է գետը։

Սա այն կամուրջն է, որտեղից Դավիթ-Բեկը Որոտան գետը գցել տվեց պարսկական խաների գործակալ Մելիք Դավիթ-Ուրացողի ամբողջ ընտանիքը, իսկ Մելիք Դավթին գլխատել տվեց։

Կամուրջի տակ, աղոտ կիսալույսի մեջ երևում են խոշոր, հիանալի ստալակտիտներ, որոնք սպիտակ և գույնզգույն մոմերի նման կախ են ընկել ջրի վրա։ Այդ ստալակտիտները զանազան ձևի ու մեծության են և մի քանի աստիճաններով կամարներ են կազմում, որոնցից ամենաներքևինները կանաչ գույն ունեն, իսկ մյուսները՝ դեղնավուն։ Այդ բյուրեղները բազմերանգ են, բարակ ու երկար, հաճախ էլ՝ սյուների նման հաստ ու բարձր։ Իսկ թե ինչ է թաքնված նրանց հետևում, ինչ գաղտնիքներ կան կամուրջի ներսում, մնում են անլուծելի։ Դրա համար էլ տեղացիները Սատանայի կամուրջ են անվանել բնության այս հոյակապ հուշարձանը։

Սատանայի կամուրջը առաջացել է կրաջրի շաղախով, որը դարերի ընթացքում ստալակտիտների (պտկաքարի ու շթաքարի) գանգվածներ է կազմել գետի վրա և, ժամանակի ընթացքում անընդհատ պնդանալով՝ դարձել է մի ամբողջական կամուրջ:

Աշխարհում չկա մի կամուրջ, որ նման լինի Սատանայի կամուրջին և կառուցված լինի կրի, ջրի ու հողի խառնուրդից:

## ԱՐԱԳԱԾԻ ՀԱՎԵՐԺԱՀԱՐՍԸ

Հայաստանի բնության հրաշալիքներից մեկն է նաև Մեծամոր լիճը, որն ունի 300 մետր տրամագիծ և 6,1 հեկտար մակերես: Լիճը գտնվում է ծովի մակերևույթից 850 մետր բարձրության վրա:

Մեծամոր լճից սկիզբ է առնում Մեծամոր գետը (Սև Ջուրը) և, կտրելով 40 կմ. տարածություն, թափվում է Արաքսի մեջ:

Հայաստանում երկու լիճ կա միայն, որ անուշահամ ջուր ունեն: Մեկը Սևանն է Գեղամա լեռների գրկում, մյուսը՝ Մեծամոր լիճը Արագածի ստորոտում: Այս ջրերն այնքան թափանցիկ են, որ կարող ես տեսնել հատակում ընկած քարերն ու կենդանիները:

Մեծամոր լիճը գոյացել է Արագածից հոսող ստորերկրյա աղբյուրներից և դրա համար էլ ձմռանը չի սառչում: Դարեր շարունակ Արագածի ընդերքում պահ մնացած աղբյուրները ծակել են իրենց կեղևը, իջել լեռների բարձունքից և հավաքվել են այստեղ: Լիճը դարձել է այդ աղբյուրների մայրը, դրա համար էլ կոչվում է Մեծամոր լիճ: Լճի ու Մեծամոր գետի ջրավազաններում և շրջակայքում գործում են 324 առանձին աղբյուրներ:

Մեծամոր լիճը միայն հաճելի հանգստավայր չէ: Նրա ջրերով ոռոգվում են տասնյակ հազար հեկտար բամբակի դաշտեր ու այգեստաններ: Մեծամորի ավազանում ապրում են մի քանի ձկնատեսակներ: Վերջին տարիներս Հարավային Ամերիկայից ներմուծվեցին ջրային կուղբեր, որոնք ընտելացել են բնական պայմաններին և բազմանում են մեծ արագությամբ, դրա համար էլ կազմակերպվել է կուղբաբուծական սովխոզ, որը յուրաքանչյուր տարի պետությանը մատակարարում է հազարավոր թանկարժեք մորթիներ:

Մեծամոր լճի մոտ կառուցվում է հանգստյան տուն, որպեսզի աշխատավորները կարողանան օգտվել բնության այս հարմարավետ հուշարձանից:

Լիճը թաքուն կապ է պահպանում Արագած լեռան հետ: Զուր չէ, որ հնում լեգենդ էր հորինվել այն մասին, թե մի հովիվ, Արագածի լանջին ոչխարի հոտն արածեցնելիս, կորցնում է իր ավանդական մահակը, որը հետո հայտնվում է Մեծամոր լճում:

Կա և մի լեգենդ, ըստ որի, լճում ապրում է հայկական Պեգասը՝ թևավոր ձին, որ երբեմն դուրս է գալիս լճի ափերը, բարձրանում Արագածի լանջը և նորից վերադառնում իր ջրային ապարանքը:

Մեծամոր լիճը Արագածի հավերժահարսն է, որ իջել է լեռներից և իր գեղեցկությամբ հրապուրում է մարդկանց:

Այդ լիճը Հայաստանի բնության լավագույն հուշարձանն է:

ԱԲՐԱՀԱՄ ԳՐԻԳՈՐՅԱՆ

# Այստեղից-այնտեղից

## ՏԱՐՕՐԻՆԱԿ ԱԿՈՒՄԲ

Լոնդոնում գոյություն ունի մի ակումբ, որի անդամները, ապրելով հին տների ու գյուղերի մեջ, պարտավորվում են 15-րդ դարից հետո հայտնագործված ոչ մի բան չտեղավորել այնտեղ: 1960 թվականին այդ ակումբի անդամներից երկուսը հեռացվել են այն բանի համար, որ նրանց բնակիչները հեռախոս ունեին:



* * *

Լիմայում (Պերու) լեգգորն ցեղի հավը ածել է մի ձու, որը կշռում է 253 գրամ:




* * *

Իտալիայի պառլամենտում մի անգամ առաջարկություն է եղել, որ ռեգլամենտը գերազանցող հռետորն իր ճառը վերջացնի մի ոտքի վրա կանգնած:

## ԹՌՉՈՂ ԳՈՐՏ

Մարկ Տվենի մոտ «Թռչող գորտը» հնարանք չէ: ԱՄՆ-ում, հատկապես հարավային նահանգներում, թռչող գորտերը նույնպես հանրահայտ են: Մի անգամ Ֆրեդերիկ Սիդենի հակառակորդները նրանից գողացան մրցանակային գորտը: Հինգ օրից հետո գորտը վերադարձավ տիրոջ մոտ, անցնելով 120 կիլոմետր տարածություն:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՊԵՏՐՈՍ ՄԱԼԱՅԱՆԻ

## ԽԱՉԲԱՌ «7»

1. «Երկու կապիտան» վեպի հեղինակը, 2. ամերիկյան ժամանակակից հայ խոշոր գրող, 3. Սովետական Միության կրկնակի հերոս, հյուսիսային բևեռի հետազոտողներից, 4. պատմական խոշոր քաղաք Եփրատ գետի ափին, 5. բուլղարական նշանավոր կոմպոզիտոր և դիրիժոր, բուլղարական ազգային կոմպոզիտորական դպրոցի հիմնադիրներից մեկը, 6. աշխարհի առաջին տիեզերագնացը, 7. 19-րդ դարի ռուս մեծ կոմպոզիտոր-քիմիկոս, 8. սովետական ռուս դրամատուրգ, «Հրացանավոր մարդը» պիեսի հեղինակը, 9. ֆրանսիական նշանավոր գրող, 10. ժամանակակից ռուս խոշոր փիլիսոփա, ակադեմիկոս, 11. Հայաստանի հանքային ջրերից, 12. ամերիկյան խոշոր նավ, որը խորտակվեց 1913 թ. սառույցին բախվելուց, Ատլանտյան օվկիանոսի հյուսիսում, 13. հին եգիպտական թագավորի անվանումը, 14. Հռոմի կաթոլիկ եկեղեցու պալատը, 15. 17-րդ դարի ռուս գյուղացիական ապստամբության նշանավոր ղեկավար, 16. հայ վիպասան, որի գրչին են պատկանում այս տողերը. «Լուսնի շառավղուն սկավառակը երևաց Այծեմնասարի հետևից և Գեղամա մթապատ ծովակն սկսեց հեզհետե լուսավորվել», 17. 1812 թ. Հայրենական պատերազմի հերոս, բանաստեղծ, պարտիզանական շարժման ակտիվ կազմակերպիչ, 18. քաղաք ՍՍՌՄ-ում, որ ծնվել է ռուս խոշոր ռևոլյուցիոներ—դեմոկրատ Չերնիշևսկին, 19. հերոս Ղ. Աղայանի հեքիաթներից, 20. պղնձյա փողային երաժշտական գործիք, 21. ծաղիկ, 22. ռուս խոշոր նկարիչ, որի նշանավոր գործերից է «Իշխանուհի Մորոզովա»-ն, 23. այն չորս խիզախներից մեկը, որը 1960 թ. Խաղաղ օվկիանոսում 49 օր պայքարեց բնության տարերքի դեմ, 24. հերոս՝ Րաֆֆու «Սամվել» վեպից:

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ





Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ՍԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 01968 Պատվեր 56 Տպաքանակ՝ 9800: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 5/II 1962 թ.: ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91: Գինը 20 կ.

# ՉԱՐԼԶ ԴԻԿԿԵՆՍ



Ցուրտ, մառախլապատ օր էր։ Լոնդոնի կենտրոնական փողոցներից մեկում երևաց մի աղքատ պատանի։ Ծնգոտիներն ու պատառոտված կոշիկները անզոր էին ցրտից պաշտպանել նրա վտիտ մարմինը։ Պատանին հետաքրքրությամբ նայում էր ցուցափեղկերին և չափում մայթերը։ Հացավաճառի խանութի մոտ նա կանգ առավ ու կարոտով նայեց ներս։ Բայց հպարտության ու արժանապատվության զգացումը ավելի զորեղ դուրս եկան, քան քաղցը։ Մի պահ կանգնելուց հետո պատանին շտապեց հեռանալ, իր հետ տանելով միայն թարմ հացի հաճելի բուրմունքը։

Հետևից եկող երկու անցորդ նկատեցին նրան և արագացրին քայլերը, որ հասնեն։ Նրանք ճանաչեցին փոքրիկին։ Տղայի հայրը բանտ էր նետվել, որովհետև չէր կարողացել վճարել պարտքերը։ Նույնով բանտարկվել էր նաև մայրը։ Այդ հսկայական քաղաքում տղան մնացել էր մեն-մենակ։

— Խե՜ղճ տղա, պետք է օգնել…

Եվ բարի մարդիկ նրան տեղավորեցին մի ֆաբրիկայում, որ գոնե օրվա հաց վաստակի։ Տղան փոքրիկ տուփերի վրա պիտակներ էր կպցնում։ Բայց դա դրությունը չփրկեց. նորից մենակ էր, կիսաքաղց։ Նրան ամենից ավելի տանջում էր այն ստորացումը, որ բաժին է ընկնում աղքատներին։

Գուցե այդպես երկար շարունակվեր, եթե պատահականությունը փրկության չհասներ։ Հայրը անսպասելիորեն մի փոքր ժառանգություն ստացավ, վճարեց պարտքերը և դուրս եկավ բանտից…

Այսպես վերջացավ անգլիացի մեծ գրող Չարլզ Դիկկենսի անուրախ մանկությունը։ Շատ չանցած, նա աշխատանքի ընդունվեց որպես պառլամենտական ռեպորտյոր։ Այդ ժամանակ էր, որ նա փորձեց գրել մի քանի երգիծական ակնարկներ և մեծ հաջողություն ունեցավ։ Հրատարակիչներից մեկը նրան հրավիրեց անգլիական կենցաղը պատկերող երգիծական նկարների համար մակագրություններ անելու։ Գուցե Դիկկենսն ինքն էլ չէր ենթադրում, որ խաղալու է ոչ թե այն երկրորդական դերը, որի համար հրավիրել էր հրատարակիչը։ Նկարների մակագրությունների փոխարեն ծնվեց մի հրաշալի վիպակ՝ «Պիկվիկյան ակումբի ետմահու հուշերը»։ Առաջին հատվածներն արդեն ազգային մեծ հռչակ բերեցին 23-ամյա հեղինակին։ Նրա փոքր-ինչ տարօրինակ մեծահոգի ու մաքրասիրտ հերոսները՝ միստր Պիկվիկը, ծառա Սեմ Ուելլերը և նրա ընկերները դարձան անմահ մարդիկ։

Մինչև այսօր էլ աշխարհի բոլոր երկրներում նրանք ուրախ ծիծաղ են առաջացնում ընթերցողների մոտ։

Նշանավոր գրող դառնալուց հետո Դիկկենսը չըմոռացավ իր մանկության տառապանքները։ Նա փափագում էր իր ստեղծագործություններով մարդկանց ուշադրությունը հրավիրել դեպի անգլիացի երեխաների ծանր ճակատագիրը։

Գրողը ստեղծեց հրաշալի ու ցնցող բնավորություններով բազմաթիվ փոքրիկ հերոսներ։ Ով մեկ անգամ կարդացել է Չ. Դիկկենսի երկերը, երբեք չի կարող մոռանալ որբ Օլիվեր Թվիստին, պստլիկ ու քաջ աղջիկ Նելլի Թրենթին, որը ծեր պապիկի միակ ապավենն էր, Դավիթ Կոպերֆիլդին, որ շատ բաներով հիշեցնում է հեղինակին։

Նա լաց է լինում, երբ նկարագրում է իր փոքրիկ հերոսների տառապանքներն ու մահը. լաց է լինում և լացացնում է իր ընթերցողներին։ Բայց Չ. Դիկկենսը նաև զայրանում է, զայրանում այն մարդկանց վրա, որոնք կործանման եզրին են հասցրել անգլիացի երեխաներին և զայրույթ է առաջացնում ընթերցողների սրտերում։

Իր ստեղծագործություններում Չ. Դիկկենսը վառ կերպով պատկերել է թշվառության ու հարստության հակադրությունը։ Նա մերկացրել է լոնդոնյան հարուստների ագահությունն ու եսասիրությունը, որը կործանում է հասարակ ժողովրդի երջանկությունը, ապականում մարդու հոգին, քայքայում ընտանիքները։

Չ. Դիկկենսի ստեղծագործությունների խորը ժողովրդայնությունը նրան համաշխարհային հռչակ է բերել։ Դրա համար էլ ամբողջ աշխարհը այսօր սիրով նշում է մեծ գրողի ծննդյան 150 տարին։

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ



ՈՍԿԻ ԱՇՈՒՆ

*ԿԱՐԱՄԱՆՅԱՆ ՄՈՆԱ (Երևան, 77-րդ դպրոց, 13 տարեկան)*



ԵՐԳՉՈՒՀԻ.



ԵՐԳԻՉ

*ՋՈՄՅԱՆ ԿԱՐԻՆԵ (Երևան, 6 տարեկան,*